թիւն օտար անուն գործածող հաստատութիւնները աչքառու ըլլալու ատրճան աւելցած են։ Այսօրինակ հաստատութեանց վարիչներուն պիտի ազդարարենք Թուրքերէն համարժէքները գործածել»։

## « ԱՌՆԵԼԻՔ ՉՈՒՆԻՆՔ »

### Կ'ԸՍԷ ԽՐՈՒՇՉԵՒ

Խորհրդային Թաս գործակալութիւնը հրապարակեց, Ցունիս եւ Ցուլիս ամիսներուն՝ Խրուշչեւի եւ զօրավար Կիւրսէլի միջեւ փոխանակուած նամակներու ամփոփումը։ Խրուշչեւ կը պահանջէ որ Թուրքիա «չէզոքութեան տանող ճամբան բռնէ», բայց Ճ'աւելցնէ թէ այդ պայման չէ որպէսզի չբարելաւուին Թուրք-խորհըրդային յարաբերութիւնները։ «Մեր նպատակը չէ վատթարացնել Թուրքիոյ եւ Մ. Նահանգներու յարաբերութիւնները»։

Յիշելով Աթաթիւրքի օրինակը Խրուշչեւ կը գրէ.— «Կը գնահատենք այն արժէքը զոր Աթաթիւրք կու տար Թուրքեւխորհրդային բարեկամութեան։ Այս վերջինը կենսական կարեւորութիւն ունի աշխարհի խաղաղութեան եւ ապագային համար։ Խորհրդային կառավարութիւնը կ'ուզէ կրկին հաստատել 1953 Մայիս 30ի յայտարարութիւնը, որ կը ճանչնայ թրքական հողամասին ամբողջականութիւնը, ինչպէս նաեւ Թուրքիոյ անկախութիւնը եւ ինքնիշխանութիւնը։ (Յառաջ.— Ընդգծումը մեր կողմէ)։

Կիւրսէլ իր պատասխանին մէջ բսած է.— «Թուրքիա հաւատարիմ պիտի մնայ իր ստանձնած միջազգային պարտաւորութիւններուն եւ յատկապէս Ատլանտեան Ուխտին»։ Այս առթիւ Թուրքիոյ նոր ղեկավարը դիտել տուած է թէ չէզոքութիւն ընտրելով չէ որ Թուրքիա իր անտեսութիւնը պիտի բարելաւէ։ Օրինակ բերած է Շուէտը, Հնդկաստանը եւ Զուիցերիան որոնք չէզոք երկիրներ ըլլալով հանդերձ, ստիպուած են զինուորական մեծ ծախքերու տակ մտնել։ Այսուհանդերձ չեշտած է թէ կ'ուզեն բարելաւուած տեսնել Թուրք-խորհրդային յարաբերութիւնները։



### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հանդիսաւոր տօնակատարութիւն Սորպոնի մէջ, 9 Հոկտեմբեր 1960, բոլոր դպրոցներու մասնակցութեամբ։



### ՊԱՏԱՐԱԳ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ այս կիրակի առաւօտ ժամը 8,30ին պատարագ պիտի մատուցուի տեղւոյն Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ։

Կը պատարագէ Տէր Վարագ քհնյ. Աւաղեան։ Հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի հանգուցեալ Դաւիթ Թաշճեանի մահուան քառասունքին առթիւ։

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

| | Ն. Ֆ. |
|---|---|
| Նախորդ գումար | 9751 |
| Նիկողոս Թարայեան (Լոնտոն) | 136,20 |
| Արեւմտ. Եւր. Կեդր. Կոմիտէ | 250 |
| Տիկին Զաքարեան | 10 |
| Աբրահամ Սարաֆեան | 20 |
| Միքայէլ Քոչարեան | 35 |
| Արման Սարեան | 50 |
| Տէր եւ Տիկին Թ. Մեսրոպեան | 100 |
| Ընդհ. գումար | 10.352,20 |

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԼԻՈՆ.— Ֆ. Կապ. Խաչի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է տեղւոյն նորակազմ Հ. Բ. Հայուհեաց մասնախումբէն 240 Ն. Ֆ. օղափոխութեան կայանին մէջ կարօտ փոքրիկի մը ծախքերուն համար Պ.Ս.Փողհարեանէ 20 Ն.Ֆ.։

## ՆՈՒԷՐ

Պ. Մանուկ Գասպարեան իր զաւկին ամուսնութեան առթիւ, Համախաբերդցիական Միութեան Կարտանի մասնաճիւղին կը նուիրէ 50 Ն. Ֆ.։ Այս առթիւ մասնաճիւղը իր խորին շնորհակալութիւնը կը յայտնէ։





### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբի կողմէ։ ՍԵՊՏԵՄԲԵՐ 11ԻՆ։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— Ողբացեալ Սողոմոն Թէհլիրեանի սգահանդէսը տեղի կ'ունենայ Սեպտեմբեր 24 շաբաթ երեկոյ Ռիւ Տիւնուառի սրահին մէջ։

Մանրամասնութիւնները յետոյ։

×

«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինգերորդ թաղամասին քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ։

×

Աղքատախնամի տարեկան պարահանդէսը Ժորժ Ե.ի շքեղ սրահներուն մէջ, Կիրակի, Հոկտեմբեր 30ին, ժամը 17էն 24։

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր Եկեղեցիի Վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս կիրակի մասնաւոր Հոգեհանգիստ կը կատարուի եկեղեցիին նախկին վարատակաւոր դպրապետ ողբացեալ Յակոբ Մալաքեանի մահուան հինգերորդ տարելիցին առիթով, ինչպէս նաեւ անոր ընտանեկից Քիրազեան գերդաստանի ննջեցեալներուն յիշատակին, ներկայութեամբ Փարիզէն Մալաքեան ընտանիքի անդամներու։ Հանդիսաւոր պատարագին երգչախումբը կը մասնակցի բազմաձայն երգեցողութեամբ։ Կը հրաւիրուին ներկայ գտնուիլ Մալաքեան եւ Քիրազեան ընտանիքներուն ննջեցեալներուն յիշատակը յարգողներ։

× Եկեղեցին ստացած է 1961 տարուան Մայր Աթոռի Օրացոյցը եւ Էջմիածին պաշտօնաթերթին Յունիսի թիւը, վաճառումի յատկացուած։



### ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է

## ՀԱՅ - ԲՈՅԺ

*

### ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

Խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Թիւ 221-222, միացեալ թիւ, 48 էջ, ամբողջովին Հայաստանի նուիրուած։ Բժշկական յօդուածներ Երեւանի բժիշկներուն կողմէ, բժշկական տեղեկութիւններ Հայաստանի մասին, գրական վկայութիւններ մեր հայրենիքին նուիրուած։

ՀԱՅ-ԲՈՅԺի բաժանորդը ՀԱՅ-ԲՈՅԺի բարեկամ մըն է։ Սպասել որ ձամակ գրուի՛ եւ բաժնեգինը պահանջուի, կը նշանակէ նեղութիւն պատճառել խմբագրին։ Դիւրացուցէք խմբագրին գործը, ցոյց տուէք ձեր բարեկամութիւնը։

Բաժանորդագրութեան պայմաններ.— Տարեկան 15 նոր ֆրանք (1500 ֆրանք)։ Արտասահման 20 նոր ֆրանք (2000 ֆ.) երկու տարեկանը մէկ կանխիկ վճարողին համար 37,5 նոր ֆրանք (3750 ֆր.)։

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆԻ ՎԵՐԱԴԱՐՁ

Փարիզի պզտիկներուն խումբը կառ մը Լիոն կը հասնի Սեպտեմբեր 4ի առաւօտը ժամը 6.30ին։ Լիոնի խումբը կը հասնի Փէռաշի կայարանը Սեպտ. 5ի առաւօտը ժամը 9ին։

Մարսէյլի խումբը Սէն Շարլ կայարանը կը հասնի Սեպտ. 5ին, ժամը 14,11ին։

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՈՂԻՄՊԻԱԿԱՆ ԽԱՂԵՐԸ

*Բացումէն ի վեր՝ եօթը օրերու մըրցումներուն մէջ առաջին, երկրորդ, երրորդ հանդիսացող՝ եւ համապատասխան ոսկի, արծաթ եւ պղինձէ մետալները շահող մարզիկներուն ազգութեամբ, մինչեւ հիմա յաղթական երկիրներուն դասաւորումը հետեւեալն է՝ իրենց շահած մետալներուն ընդհանուր թիւին նըւազող կարգով.—*

| | Ոսկի | Արծաթ | Պղինձ |
|---|---|---|---|
| Մ. Նահանգներ | 13 | 11 | 8 |
| Խ. Միութիւն | 14 | 5 | 10 |
| Գերմանիա | 5 | 12 | 4 |
| Իտալիա | 5 | 2 | 2 |
| Հունգարիա | 3 | 5 | 2 |
| Աւստրալիա | 4 | 4 | 3 |
| Նոր – Զելանտա | 2 | 0 | 0 |
| Թուրքիա | 3 | 0 | 0 |
| Ռումանիա | 1 | 1 | 3 |
| Պուլկարիա | 1 | 1 | 1 |
| Անգլիա | 1 | 2 | 5 |
| Արաբ. Մ. Հանր. | 0 | 1 | 0 |
| Ֆրանսա | 0 | 0 | 1 |

×

*Ուրբաթ օր երկարութեան մրցումին երրորդ հանդիսացաւ՝* Իկոր Տէր-Յովհաննէսեան: *Առաջին երկու տեղերը Ամերիկացիք շահած են: Հայ մարզիկը 8 մեթրը 4 ցատկած է: Ամերիկացիք 8 մեթր 12 եւ 8 մեթր 11:*





## ՄՈՒՐԱՏ - ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

ՎԵՆԵՏԻԿ

1. 1960–61 ուսումնական տարեշրջանը պիտի սկսի Հոկտեմբեր 10ին:

2. Վերաքննութիւնները տեղի պիտի ունենան Հոկտեմբեր 3–8:

3. Արձակուրդի առթիւ, իրենց ծնողաց քով գացող վերաքննելի աշակերտները պէտք է որ Հոկտեմբեր 2ին վերադարձած ըլլան:

4. Աշակերտներէն ոչ ոք կրնայ Սեպտեմբեր 25էն առաջ, վարժարան ներկայանալ:

ՏՆՕՐԷՈՒԹԻՒՆ







### ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

*Գ. Հայրիկեան կը նուիրէ 10 Ն. Ֆ. Խաչիկ Թելեանի մահուան առթիւ՝ Շաւարշ Միսաքեան սրահին:*

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Կապ. Խաչի Վիէնի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է 10 Ն. Ֆ. Տիկին Անահիտ Ուզունեանէ Օր. Խաչատուրեանի ամուսնութեան առթիւ, իր զաւակներուն ի նպաստ:*



Imprimerie Spéciale du journal « Haratch »



### ՓԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

*Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբի կողմէ: ՍԵՊՏԵՄԲԵՐ 11ԻՆ:*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*ԼԻՈՆ.— Ողբացեալ Սողոմոն Թէհլիրեանի ոգեհանգիստը տեղի կ'ունենայ Սեպտեմբեր 24 շաբաթ երեկոյ Ռիւ Տիւնուառի սրահին մէջ:*

*Մանրամասնութիւնները չուտով:*

×

*«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինգերորդ Թաղամասին քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ:*

×

*Աղքատախնամի տարեկան պարահանդէսը Փորթ Տ-ի շքեղ սրահներուն մէջ, Կիրակի, Հոկտեմբեր 30ին, ժամը 17էն 24:*

×

*Հանդիսաւոր տօնակատարութիւն Սորպոնի մէջ, 9 Հոկտեմբեր 1960, բոլոր դպրոցներու մասնակցութեամբ:*

×

*ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Տօնածառի հանդէսը, կիրակի՝ Դեկտեմբեր 18, կէսօրէ ետք:*

×

*ՈՂԲԱՑԵԱԼ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ 6 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, Սորպոնի մէջ:*



*ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է*

### ՀԱՅ - ԲՈՅԺ

*

*ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ*

Խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Թիւ 221–222, միացեալ թիւ, 48 էջ, ամբողջովին Հայաստանի նուիրուած Բժշկական յօդուածներ Երեւանի բժիշկներուն կողմէ, բժշկական տեղեկութիւններ Հայաստանի մասին, գրական կտորներ [illegible] նուիրուած

ՀԱՅ-ԲՈՅԺի բաժանորդը ՀԱՅ-ԲՈՅԺի բարեկամ մըն է: Սպասել որ [illegible] գրուի՝ եւ բաժնեգին պահանջուի, [illegible] նշանակէ նեղութիւն պատճառել խմբագրին: Դիւրացուցէք խմբագրին գործը, ցոյց տուէք ձեր բարեկամութիւնը

*Բաժանորդագրութեան պայմաններ — Տարեկան 15 նոր ֆրանք (1500 ֆրանք) Արտասահման 20 նոր ֆրանք (2000 ֆ.) երկու տարեկանը մէկէ կանխիկ վճարողի համար 37,5 նոր ֆրանք (3750 ֆր.)*

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)

## ՀԱՅԱՍՏԱՆԷՆ ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Հայաստանէն Նազիկ Վարդանեան կը փնտռէ իր զաւակը՝ Վարդան Վարդանեան (Օհաննէսի Գրիգորի որդի), բնիկ Պրուսացի (Աճօլէկ գիւղէն)։ Պատերազմին կորսուած է Գերմանիոյ ճակատը։ Լուր ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել. — Երեւան, Սարը Թաղ, 6րդ շարք, 41րդ տուն, Հայաստան, կամ՝ Փիլիպպոս Եասյեանի՝*

167, Rue de l'Egalite, ISSY-LES-MOULINEAUX

*Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել.*

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

*Այս կիրակի Տօն Խաչվերացի եւ ժողովրդապետական Եկեղեցիին։*

*Զայնաւոր պատարագ ժամը 10,30ին։*
*Պիտի պատարագէ եւ քարոզէ*
*ԳԵՐՊ. ԿԱՐԱՊԵՏ ԱՄԱՏՈՒՆԻ։*

*ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆ. ՄԱՐՄԻՆԸ շնորհակալութեամբ ստացած է Տիկ. Վերժին Յովհաննէսեանի մահուան առթիւ, Տէր եւ Տիկին Ա. Խանտանեանէ 30.00 Ն. Ֆ., Պ. Զարեհ Զուհաճեանէ՝ 20.00 Ն. Ֆ.։*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Շաւիլի եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուիրատուութիւնները. — Տէր եւ Տիկին Միրան Պարոնեան (Շաւիլ) 100 Ն. Ֆ., իրենց աղջկան ամուսնութեան առթիւ, Տիկին Նաւասրեան (Նիս) 20 Ն. Ֆրանք։*

*ՎԵՆԵՏԻԿ (ԻՏԱԼԻԱ)*

## ՄՈՒՐԱՏ - ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

1. 1960–61 ուսումնական տարեշրջանը պիտի սկսի Հոկտեմբեր 10ին։
2. Վերաքննութիւնները տեղի պիտի ունենան Հոկտեմբեր 3–8։
3. Արձակուրդի առթիւ, իրենց ծնողաց քով գացող վերաքննելի աշակերտները պէտք է որ Հոկտեմբեր 2ին վերադարձած ըլլան։
4. Աշակերտներէն ոչ ոք կրնայ Սեպտեմբեր 25էն առաջ, վարժարան ներկայանալ։

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

*ՍԵՒՐ*

—

**1960-1961**

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻ
ՄՈՒՏՔԸ՝
ԵՐԿՈՒՇԱԲԹԻ 19 ՍԵՊՏԵՄԲԵՐ
ԺԱՄԸ 8էն 18

## ԳԱՂԹԱԿԱՆ ԵՒ ՖՐԱՆՍԱՀՊԱՏԱԿ ՀԱՅԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

*Գաղթականաց Գրասենեակը կը տեղեկացնէ թէ ի զօրու է տալու ծննդեան եւ ամուսնական վկայագրեր ոչ միայն գաղթական այլեւ Ֆրանսահպատակ Հայերուն, որոնք ներկայիս պէտք ունին անոնց՝ յատկապէս իրենց ինքնութեան թուղթերը վերանորոգելու համար։*

*Որոշ պարագաներու մէջ, Հայկական Գրասենեակը կրնայ այդ վկայականները տալ նաեւ օտար հպատակութիւն ունեցող Հայերու։*

*Գրաւոր կամ անձամբ դիմել՝*

OFFICE FRANÇAIS de PROTECTION
des RÉFUGIÉS et APATRIDES
Service Arménien, Bureau N. 192
23, Rue La Pérouse, PARIS, 16 Métro : KLEBER

Խիստ կարեւոր.— *Աւելորդ դրամ եւ ժամանակ չվատնելու համար, անձամբ ներկայանալու պարագային՝ մուտքին հարցնել միայն եւ դիմել ուղղակի Հայ -* կական Գրասենեակը, *Թիւ 192։ Այլապէս, այցելուն սոյնպ սխալ տեղ կ'առաջնորդուի եւ աւելորդ անպատեհութիւններու կը հանդիպի։*

*Այս առթիւ Գրասենեակը կը յիշեցնէ թէ 3 տարուան տեւողութեամբ տրուած «Հայ գաղթականի վկայագիրը», պարտաւորիչ է վերանորոգել իր ատենին։*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*ԼԻՈՆ.— Ողբացեալ Սողոմոն Թէհլիրեանի սգահանդէսը տեղի կ'ունենայ Սեպտեմբեր 24 շաբաթ երեկոյ Թիւ Տիննուարի սրահին մէջ։*

*Մանրամասնութիւնները յետոյ։*

×

*«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինգերորդ Թաղամասին քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ։*

×

*Աղքատախնամի տարեկան պարահանդէսը ժորժ Ե.ի շքեղ սրահներուն մէջ, Կիրակի, Հոկտեմբեր 30ին, ժամը 17էն 24։*

×

*Հանդիսաւոր տօնակատարութիւն Սորպոնի մէջ, 9 Հոկտեմբեր 1960, բոլոր դպրոցներու մասնակցութեամբ։*

×

*ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Տօնածառի հանդէսը, կիրակի՝ Դեկտեմբեր 18, կէսօրէ ետք։*

×

*ՈՂԲԱՑԵԱԼ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ 6 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, Սորպոնի մէջ։*

Imprimerie Spéciale du journal « Haratch »



## Կ'ՈՒԶՈՒԻ

*Դպրոցասէր Տիկնանց վարժարանը պէտք ունի կնոջ մը, ընդհանուր մաքրութեան համար։ Դիմել հասցէին՝* 1 Գուլվար տիւ Նոռ, Լը Ռէնսի։
*Հեռաձայն՝* 97–01–72։

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

*Սեւրի Մուրատեան Վարժարանի հանգերձատան համար երկու կիներ կ'ուզուին, 40էն 60 տարեկան։ Դիմել ուղղակի վարժարանի մատակարարութեան։*
*Հեռախօս՝* OBS. 18-28

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի Կոմիտէի ընդհանուր ընկերական ժողովը այս շաբաթ երեկոյեան ժամը 8,30ին, Օհանջանեան ակումբը։ Շատ կարեւոր օրակարգ։*

*Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։*

### *ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ*

*Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբի կողմէ։ ՍԵՊՏԵՄԲԵՐ 11ԻՆ։*

1918 1958

ՅՈՒՇԱՄԱՏԵԱՆ
Հ.Մ.Ը.Մ.ի

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ
Հ.Մ.Ը.Մ.ի Յուշամատեանը

*Նուիրուած Միութեան քառասնամեակին՝* (1918 – 1958)։

*Հրատարակութիւն՝ Շրջանային վարչութեան։*

500 գեղատիպ էջ ճոխօրէն պատկերազարդուած, լաթակազմ։

*Բովանդակութիւն՝*

Ա. Հայ Մարմնակրթական շարժումը 1900 – 1915։

Բ.— Հ. Մ. Ը. Մ.ի ծնունդն ու տարածումը Պոլիս եւ գաւառները։

Գ.— Հ. Մ. Ը. Մ.ի առաքելութիւնը Հայաստան։

Դ.— Հ. Մ. Ը. Մ. արտասահմանի մէջ, Եւրոպա, զոյգ Ամերիկաներ, Մերձաւոր Արեւելք, Աֆրիկա եւ Եգիպտոս։

Ե.— Հ. Մ. Ը. Մ. Սուրիոյ՝ Լիբանանի եւ Յորդանանի մէջ։

*Վաճառման կեդրոնատեղի՝*

ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԳՐԱՏՈՒՆ
LIBRAIRIE HAMASKAINE
10, Rue Hussein BEYHOUM
BEYROUTH LIBAN.

ԳԻՆ՝ 15 Ն. Ֆ.

## ՈՂԻՄՊԻԱԿԱՆ ԽԱՂԵՐԸ

*Բացումէն ի վեր՝ 10 օրերու մրցումներուն մէջ առաջին, երկրորդ, երրորդ հանդիսացող եւ համապատասխան ոսկի, արծաթ եւ պղինձէ մետալները շահող մարզիկներուն ազգութեամբ, մինչեւ հիմա յաղթական երկիրներուն դասաւորումը հետեւեալն է՝ իրենց շահած մետալներուն ընդհանուր թիւին նուազող կարգով.—*

| | Ոսկի | Արծաթ | Պղինձ |
|---|---|---|---|
| Խորհ. Միութիւն | 22 | 15 | 20 |
| Մ. Նահանգներ | 23 | 12 | 11 |
| Գերմանիա | 9 | 14 | 7 |
| Իտալիա | 11 | 7 | 5 |
| Աւստրալիա | 6 | 6 | 5 |
| Ֆրանսա | 0 | 2 | 2 |

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Այրի Տիկին Գրիգոր Թեւանեան եւ զաւակները՝ Ժակլին, Կիւրեղ եւ Կարապետ կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Երկուշաբթի (Մոնլուց) առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ իրենց ամուսնոյն եւ հօր՝*

**ԳՐԻԳՈՐ ԹԵՒԱՆԵԱՆԻ**

*մահուան քառասունքին առթիւ։*

*Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները։*

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

*Տիկին Արաքսի Խաչէրեան եւ Տէր եւ Տիկին Վ. Հայրապետեան փոխան ծաղկեպսակի քսանական Ն. Ֆ. կը նուիրեն Սողոմոն Թէհլիրեան սրահին, Տիկին Աստղինէ Նուրեանի կսկծալի մահուան առթիւ։ (Ստանալ «Յառաջ»էն)։*



ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

*ՍԵՒՐ*

—

**1960-1961**

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ՄՈՒՏՔԸ՝

ԵՐԿՈՒՇԱԲԹԻ 19 ՍԵՊՏԵՄԲԵՐ

ԺԱՄԸ 8էն 18



## ԳԱՂԹԱԿԱՆ ԵՒ ՖՐԱՆՍԱՀՊԱՏԱԿ ՀԱՅԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

*Գաղթականաց Գրասենեակը կը տեղեկացնէ թէ ի զօրու է տալու ծննդեան եւ ամուսնական վկայագրեր ոչ միայն գաղթական այլեւ Ֆրանսահպատակ Հայերուն, որոնք ներկայիս պէտք ունին անոնց՝ յատկապէս իրենց ինքնութեան թուղթերը վերանորոգելու համար։*

*Որոշ պարագաներու մէջ, Հայկական Գրասենեակը կրնայ այդ վկայականները տալ նաեւ օտար հպատակութիւն ունեցող Հայերու։*

*Գրաւոր կամ անձամբ դիմել՝*

OFFICE FRANÇAIS de PROTECTION
des RÉFUGIÉS et APATRIDES
Service Arménien, Bureau N. 192
23, Rue La Pérouse, PARIS, 16 Métro : KLEBER

Խիստ կարեւոր.— *Աւելորդ դրամ եւ ժամանակ չվատնելու համար, անձամբ ներկայանալու պարագային՝ մուտքին հարցնել միայն եւ դիմել ուղղակի Հայ*կական Գրասենեակը, *Թիւ 192։ Այլապէս, այցելուն առէպ սխալ տեղ կ'առաջնորդուի եւ աւելորդ անպատեհութիւններու կը հանդիպի։*

*Այս առթիւ Գրասենեակը կը յիշեցնէ թէ 3 տարուան տեւողութեամբ տրուած «Հայ գաղթականի վկայագիրը», պարտաւորիչ է վերանորոգել իր ատենին։*

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*ԼԻՈՆ.— Ողբացեալ Սողոմոն Թէհլիրեանի սգահանդէսը տեղի կ'ունենայ Սեպտեմբեր 24 շաբաթ երեկոյ Ռիւ Տիւնուառի սրահին մէջ։*

*Մանրամասնութիւնները յետոյ։*

×

*«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինգերորդ Թաղամասին քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ։*

×

*Աղքատախնամի տարեկան պարահանդէսը Ժորժ Ե.ի շքեղ սրահներուն մէջ, Կիրակի, Հոկտեմբեր 30ին, ժամը 17էն 24։*

×

*Հանդիսաւոր տօնակատարութիւն Սորպոնի մէջ, 9 Հոկտեմբեր 1960, բոլոր դպրոցներու մասնակցութեամբ։*

×

*ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Տօնածառի հանդէսը, կիրակի՝ Դեկտեմբեր 18, կէսօրէ ետք։*

×

*ՈՂԲԱՑԵԱԼ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ 6 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, Սորպոնի մէջ։*

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| « ԾԱԽՈՒ Է » | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան։

## Կ'ՈՒԶՈՒԻ

*Դպրոցասէր Տիկնանց վարժարանը պէտք ունի կնոջ մը, ընդհանուր մաքրութեան համար։ Դիմել Հաստատութեան* 1 Պուլվար տիւ Նօռ, Լը Ռէնսի։

*Հեռաձայն՝ 97-01-72։*

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

*Այս կիրակի Տօն Խաչվերացի եւ ժողովրդապետական Եկեղեցիին։*

*Ձայնաւոր պատարագ ժամը 10,30ին։ Պիտի պատարագէ եւ քարոզէ*

*ԳԵՐՊ. ԿԱՐԱՊԵՏ ԱՄԱՏՈՒՆԻ։*

## ՀԱՅԱՍՏԱՆԷՆ ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Հայաստանէն Նազիկ Վարդանեան կը փնտռէ իր զաւակը՝ Վարդան Վարդանեան (Օվակենց Գրիգորի որդի), բնիկ Պրուսացի (Սէօլէզ գիւղէն)։ Պատերազմին կորսուած է Գերմանիոյ ճակատը։ Լուր ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել.— Երեւան, Սարը Թաղ, 6րդ շարք, 41րդ տուն, Հայաստան, կամ՝ Փիլիպպոս Եսայեանի՝*

167, Rue de l'Egalite, ISSY-LES-MOULINEAUX

*Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել։*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

*Հայաստանէն կը փնտռեն Պ. Խաչատրեան Գալուստը, որ 1914ին Մուշէն բաժնուած է իր հարազատներէն եւ որ մինչեւ 1946 Թուականը կը նամակցէր անոնց հետ։ Իր եղբօր անունը Եղիազար է*

*× Հայաստանէն Տիկին Շարոյեան Անահիտ, 72 տարեկան կը փնտռէ իր որդին որ 1941 Թուականէն սկսեալ իբրեւ զինուոր մեկնած է։ Ըստ իր ստացած տեղեկութիւններուն ան Փարիզ կը գտնուի եւ ամուսնացած ունի զաւակներ։ Իր անունն է Շարոյեան Նիկոլ։*

*Վերոյիշեալ անձերու մասին տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել Փարիզի եկեղեցւոյ դիւանատունը.—* 15 Ռիւ Ժան Կուժօն, Փարիզ (8)։

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի Կոմիտէի ընդհանուր ընկերական ժողովը այս շաբաթ երեկոյեան ժամը 8,30ին, Օհանջանեան ակումբը։ Շատ կարեւոր օրակարգ։*

*Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։*

### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

*Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբի կողմէ։ ՍԵՊՏԵՄԲԵՐ 11ԻՆ։*

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

*Սեւրի Մուրատեան վարժարանի հանդերձատան համար երկու կիներ կ'ուզուին, 40էն 60 տարեկան։ Դիմել ուղղակի վարժարանի մատակարարութեան։*

*Հեռախօս՝* OBS. 18-28

Այրի Տիկին Զարուհի Տէր-Յակոբեան,
Պ. Տօրք Տէր - Յակոբեան,
Տէր եւ Տիկին Մեսրոպ Տէր-Յակոբեան եւ զաւակները,
Տէր Մեսրոպ Քհնյ. Տէր - Յակոբեան եւ երէցկինը (*Ցուինատան*),
Տէր եւ Տիկին Արզուեան (*Ամերիկա*) եւ զաւակները,
Տէր եւ Տիկին Մելքիս Նշանեան եւ զաւակները, Այրի Տիկին Օննիկ Նշանեան, Այրի Տիկին Բաբսեղ Նշանեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Արէն Նշանեան եւ զաւակը, ինչպէս նաեւ բոլոր ընտանեկան պարագաները խոր ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, մեծ-հօր, քեռայրին եւ ազգականին՝

## ՅԱԿՈԲ ՏԷՐ-ՅԱԿՈԲԵԱՆԻ

յանկարծական մահը, որ տեղի ունեցաւ Սեպտեմբեր 7ին, իր բնակարանը:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Շաբաթ կէսօրէ ետք ժամը 14.30ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Պանթէօ - Փարիզէնի գերեզմանատունը, ամփոփուելու համար մտաւորականներու դամբարանը:

*Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել:*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Այրի Տիկին Գրիգոր Թեւանեան եւ զաւակները՝ Ժալլին, Կիւրեղ եւ Կարապետ կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Երկուշաբթի (մեռելոց) առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ իրենց ամուսնոյն եւ հօր՝*

## ԳՐԻԳՈՐ ԹԵՒԱՆԵԱՆԻ

*մահուան քառասունքին առթիւ:*

*Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:*

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

*Մարսէյլէն Պ. Քիւփէլեան քսան Ն. Ֆ. կը նուիրէ Սողոմոն Թէհլիրեան սրահին: (Ստանալ «Յառաջ»էն):*

×

*Պօլիէօյէն Պ. Պարոյր Մնակեան 10 Ն. Ֆ. կը նուիրէ Սողոմոն Թէհլիրեան սրահին: (Ստանալ «Յառաջ»էն):*

### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

*Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբի կողմէ: ՍԵՊՏԵՄԲԵՐ 11ԻՆ:*

### ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ

*Այս Կիրակի Վերացման Ս. Խաչի Տօնին առթիւ հանդիսաւոր քառաձայն Ս. Պատարագ կը մատուցուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ: Պիտի պատարագէ եւ քարոզէ Կաթողիկոսական պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ:*

*Յետ միջօրէին ժամը 4.30ին պիտի կատարուի հանդիսաւոր անդաստան եւ Թափօր Ս. Խաչի:*

*Երկուշաբթի Մեռելոցի առթիւ պիտի մատուցուի Ս. պատարագ:*

## ԳԱՂԹԱԿԱՆ ԵՒ ՖՐԱՆՍԱՀՊԱՏԱԿ ՀԱՅԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

*Գաղթականաց Գրասենեակը կը տեղեկացնէ թէ իրաւասու է տալու ծննդեան և ամուսնական վկայագրեր ոչ միայն գաղթական այլև Ֆրանսահպատակ Հայերուն, որոնք ներկայիս պէտք ունին անոնց՝ յատկապէս իրենց ինքնութեան թուղթերը վերանորոգելու համար:*

*Որոշ պարագաներու մէջ, Հայկական Գրասենեակը կրնայ այդ վկայականները տալ նաեւ օտար հպատակութիւն ունեցող Հայերու:*

*Գրաւոր կամ անձամբ դիմել՝*

OFFICE FRANÇAIS de PROTECTION
des RÉFUGIÉS et APATRIDES
Service Arménien, Bureau N. 192
23, Rue La Pérouse, PARIS, 16 Métro : KLEBER

Խիստ կարեւոր.— *Աւելորդ դրամ եւ ժամանակ չվատնելու համար, անձամբ ներկայանալու պարագային՝ մուտքին հարցնել միայն եւ դիմել ուղղակի Հայ -* կական Գրասենեակը, *թիւ* 192: *Այլապէս, այցելուն առէպ սխալ տեղ կ'առաջնորդուի եւ աւելորդ անպատեհութիւններու կը հանդիպի:*

*Այս առթիւ Գրասենեակը կը յիշեցնէ թէ 3 տարուան տեւողութեամբ տրուած «Հայ գաղթականի վկայագիրը», պարտաւորիչ է վերանորոգել իր ատենին:*

*Մարսէյլի եւ շրջակայքի հայրենակից - ները իրենց դիւրութեան համար կրնան դիմել՝ առաջնորդարան,*

26, RUE DES CONVALESCENTS

### ՀԱՅԿ. ԲԱՐԵԳՈՐԾ. ԸՆԴՀ. ՄԻՈՒԹԻՒՆ
### ՀՐԱՒԻՐԱԳԻՐ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

*Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան Կեդրոնական Վարչական ժողովը պատիւ ունի հրաւիրելու Միութեան բոլոր իրաւասու անդամները ներկայ գտնուիլ 47րդ Ընդհ. Ժողովին, որ պիտի գումարուի Շաբաթ օր, 19 Նոյեմբեր* 1960, *առաւօտեան ժամը 9,30ին, Միութեան Կեդր. Գրասենեակին մէջ,* 250 Ֆիֆթ էվընիւ, Նիւ Եորք, Ն. Ե.:

*Եթէ օրինաւոր մեծամասնութիւն մը ներկայ չըլլայ վերոյիշեալ թուականին, այս ծանուցումը պիտի նկատուի իբրեւ երկրորդ հրաւէր Ընդհ. Ժողովի, որ պիտի գումարուի* Շաբաթ *եւ* կիրակի, 3 *եւ* 4 Դեկտեմբեր 1960, *առաւօտեան ժամը* 9,30*ին*, Օթէլ Ռուզվելթի *մէջ*, Մետիսըն էվընիւ *եւ 45րդ փողոց, Նիւ Եորք, Ն.Ե.:*

*Բոլոր իրաւասու անդամները որ ներկայ պիտի ըլլան այս ժողովին, օրինական մեծամասնութիւն պիտի կազմեն:*

ՕՐԱԿԱՐԳ

1. *Ընդհանուր Տեղեկագիր 1959 Տարեշրջանի:*
2. *Ընդհանուր Հաշուետուութիւն 1959 Տարեշրջանի:*
3. *Կանոնագրի մանր բարեփոխումներ:*
4. *Ընտրութիւն Կեդր. Վարչ. Ժողովի՝ իրենց պաշտօնավարութեան շրջանը աւարտած անդամներու տեղ:*
5. *Առաջարկներ եւ Թելադրութիւններ:*
6. *Ուղերձներ:*

Ի դիմաց Կեդր. Վարչ. Ժողովի
(*Ատենադպիր*) (*Ատենապետ*)

Նիւ Եորք, 25 Օգոստ. 1960





### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը տեղի պիտի ունենայ Հոկտեմբեր ութին, Մարսէյլ, Ալհամպրայի չքեղ սրահներուն մէջ:*

*Մանրամասնութիւնները յաջորդով:*

## Կ'ՈՒԶՈՒԻ

*Դպրոցասէր Տիկնանց վարժարանը պէտք ունի կնոջ մը, ընդհանուր մաքրութեան համար: Դիմել հաստատութեան* 1 Պուլվար տիւ Նոռ, Լը Ռէնսի:

*Հեռաձայն՝* 97-01-72:

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

*Այս կիրակի Տօն Խաչվերացի եւ ժողովրդապետական Եկեղեցիին:*

*Ձայնաւոր պատարագ ժամը 10,30ին:*

*Պիտի պատարագէ եւ քարոզէ*
*ԳԵՐՊ. ԿԱՐԱՊԵՏ ԱՄԱՏՈՒՆԻ:*

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

*Սեւրի Մուրատեան Վարժարանի հանգերձատան համար երկու կիներ կ'ուզուին, 40էն 60 տարեկան: Դիմել ուղղակի վարժարանի մատակարարութեան:*

*Հեռախօս՝* OBS. 18-28

### ՀԱՅԱՍՏԱՆԷՆ ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Հայաստանէն Նազիկ Վարդանեան կը փնտռէ իր զաւակը՝ Վարդան Վարդանեան (Օվակենց Գրիգորի որդի), բնիկ Պրուտացի (Սէօլէզ գիւղէն): Պատերազմին կորսուած է Գերմանիոյ ճակատը: Լուր ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել.— Երեւան, Սարը Թաղ, 6րդ շարք, 41րդ տուն, Հայաստան, կամ՝ Փիլիպպոս Եսայեանի՝*

167, Rue de l'Egalite, ISSY-LES-MOULINEAUX

*Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել:*

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի Կոմիտէի ընդհանուր ընկերական ժողովը այս շաբաթ երեկոյեան ժամը 8,30ին, Օհանջանեան ակումբը: Շատ կարեւոր օրակարգ:*

*Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:*

## Կ'ՈՒԶՈՒԻ

TRICOT RECTILIGNE JAUGE 7

*Աշխատութեան համար ձեռնարկուներ: Դիմել՝ Հաստատութիւն*

TEXA, 97 Rue d'Aboukir, PARIS (2e) - Tél. CEN. 93.26

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Գրիգոր Թեւանեան եւ զաւակները՝ Ժագլին, Կլերեղ եւ Կարապետ կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Երկուշաբթի (ժեւելոց) առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ իրենց ամուսնոյն եւ հօր՝

## ԳՐԻԳՈՐ ԹԵՒԱՆԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

×

1915ին նահատակուած Ամասիացիներուն յիշատակին հոգեհանգստեան պաշտօն պիտի մատուցուի, Կիրակի առաւօտ, Սեպտեմբեր 18ին, Առնուվիլի Վարագայ Ս. Խաչ եկեղեցիին մէջ:

Պատարագէն ետք, հաւաքոյթ եկեղեցւոյ կից սրահին մէջ:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տէր եւ Տիկին Յարութիւն Միւթէվէլեան, Յակոբ Տէր – Յակոբեանի կսկծալի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի հարիւր Ն. Ֆ. կը նուիրեն Յառաջի բարգաւաճման համար:

ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆ. Մարմինը շնորհակալութեամբ ստացած է քսան Ն. Ֆ. Տիկ. Ա. Սարգիսեանէ, Տիկին Վերժին Յովհաննէսեանի մահուան առթիւ:

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր եկեղեցիի վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ իր հիմնած հայերէն լեզուի եւ հայրենագիտութեան դասընթացքը, երկու սեռէ աշակերտներու համար, կը վերսկսի Չորեքշաբթի օր, 14 Սեպտեմբեր, ժամը 18ին, Բարեգործականի սրահին մէջ, 19ա, Րիւ Վանքիւր, ուսուցչութեամբ Տիկին Ս. Թորոսեանի: Հայ ծնողները կը յանձնարարուի օգտուիլ առիթէն, իրենց զաւակները առաջնորդելով հետեւելու դասընթացքին: Արձանագրուելու համար դիմել դասերու օրերը, Չորեքշաբթի եւ Ուրբաթ, ժամը 18ին:

X. Նամակ ունի Յովհ. Թէրլէմէզեան: Ինք կամ զաւակները Արշալոյս, Արաքսի եւ Սիրուն կը հրաւիրուին առանել:

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉ

Ֆ. Կ. Խաչի Պէլֆոնթէնի կայանի տնօրէնութիւնը շնորհակալութեամբ ստացած է իրենց այցելութեան առթիւ.—

Պ. Ակոնայեան Գուրգէնէ 50 Ն. Ֆ.: Տէր եւ Տիկին Թուֆանեանէ 50 Ն. Ֆ.: Պ. Ռ. Թադէոսեանէ յիսուն Ն. Ֆ.: Տէր եւ Տիկին Գ. Զպուքճեանէ 40 Ն. Ֆ.:

**ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ**
ՍԵՒՐ
—
**1960-1961**
ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻ
ՄՈՒՏՔԸ՝
ԵՐԿՈՒՇԱԲԹԻ 19 ՍԵՊՏԵՄԲԵՐ
ԺԱՄԸ 8ԷՆ 18

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

Վարժարանը կը վերաբացուի, Երկուշաբթի առաւօտ, Սեպտեմբեր 19ին:

×

## Կ'ՈՒԶՈՒԻ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի խնամակալութիւնը պէտք ունի ուսանողուհի մը, որ ստացած ըլլայ Ֆրանսական երկրորդական կրթութիւն եւ կարենայ դասաւանդել վարժարանին մէջ: Բնակութիւն եւ սնունդ ապահովուած են:

Մանրամասնութեան համար դիմել տնօրէնութեան: 1, Պուլվ. տիւ Նօր, Լը Րէնսի, Հեռ. 927-01,72:

## ՎԵՐԱԲԱՑՈՒՄ

Շաւիլի հայկական դպրոցի վերաբացումը այս Հինգշաբթի 15 Սեպտեմբեր, 1960ին, ուսուցչութեամբ Տիկին Գեղան Շինիկճեան – Փափազեանի: Արձանագրութեանց համար դիմել՝ 4 Րիւ տէ Թուա Շանքիէ: Ժամը 9-12 եւ 2-4:

## ՎԵՐԱՄՈՒՏ
## ԽՐԻՄԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Իսիի Խրիմեան վարժարանը կը վերաբացուի Սեպտեմբեր 15ին:

Ծնողներէն անյապաղ կը խնդրուի արձանագրել տալ իրենց զաւակները:





## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ
ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| « ԾԱԽՈՒ Է » | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը տեղի պիտի ունենայ Հոկտեմբեր ութին, Մարսէյլ, Ալհամպրայի շքեղ սրահներուն մէջ:

Մանրամասնութիւնները յաջորդով:

## ԳԱՂԹԱԿԱՆ ԵՒ ՖՐԱՆՍԱՀՊԱՏԱԿ ՀԱՅԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Գաղթականաց Գրասենեակը կը տեղեկացնէ թէ իրաւասու է տալու ծննդեան և ամուսնական վկայագրեր ոչ միայն գաղթական այլեւ Ֆրանսահպատակ Հայերուն, որոնք ներկայիս պէտք ունին անոնց՝ յատկապէս իրենց ինքնութեան թուղթերը վերանորոգելու համար:

Որոշ պարագաներու մէջ, Հայկական Գրասենեակը կրնայ արդ. վկայականները տալ նաեւ օտար հպատակութիւն ունեցող Հայերու:

Գրաւոր կամ անձամբ դիմել՝

OFFICE FRANÇAIS de PROTECTION
des RÉFUGIÉS et APATRIDES
Service Arménien, Bureau N. 192
23, Rue La Pérouse, PARIS, 16 Métro : KLEBER

Խիստ կարեւոր.— Աւելորդ դրամ եւ ժամանակ չկորսնցնելու համար, անձամբ ներկայանալու պարագային՝ մուտքին հարցնել միայն եւ դիմել ուղղակի Հայկական Գրասենեակը, թիւ 192: Այլապէս, այցելուն սխալ տեղ կ'առաջնորդուի եւ աւելորդ անպատեհութիւններու կը հանդիպի:

Այս առթիւ Գրասենեակը կը յիշեցնէ թէ 3 տարուան տեւողութեամբ տրուած «Հայ գաղթականի վկայագիրը», պարտաւորիչ է վերանորոգել իր ատենին:

Մարսէյլի եւ շրջակայքի հայրենակիցները իրենց դիւրութեան համար կրնան դիմել՝ առաջնորդարան,

26, RUE DES CONVALESCENTS

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹԸ

Բանակումէն վերադարձին, Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Փարիզի Ահարոնեան խումբը կը կազմակերպէ առաջին ընկերահամակրական հաւաքոյթը:

Այս Կիրակի ժամը 15էն 23, Հայ Մշակոյթի Տան մէջ:

17, Rue Bleue, PARIS (9e)

Հաճելի մթնոլորտ:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— Ողբացեալ Սողոմոն Թէհլիրեանի ոգահանգիստը տեղի կ'ունենայ Սեպտեմբեր 24 շաբաթ երեկոյ Ռիւ Տիւնուայի սրահին մէջ:

Մանրամասնութիւնները շուտով:

×

«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Հինգերորդ թաղամասին քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ:

×

Հանդիսաւոր տօնակատարութիւն Սորպոնի մէջ, 9 Հոկտեմբեր 1960, բոլոր դպրոցներու մասնակցութեամբ:

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Սեւրի Մուրատեան Վարժարանի հանգրուանի համար երկու կիներ կ'ուզուին, 40էն 60 տարեկան: Դիմել ուղղակի վարժարանի մատակարարութեան:

Հեռախօս՝ OBS. 18-28

## Կ'ՈՒԶՈՒԻ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանը պէտք ունի կնոջ մը, ընդհանուր մաքրութեան համար: Դիմել հաստատութեան 1 Պուլվար տիւ Նօռ, Լը Ռէնսի:

Հեռաձայն՝ 97-01-72:

### ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

Օր. ՄԱՏԼԷՆ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ
եւ
Պ. ԺԻԼՊԵՐ ՀԱՄԱԼԵԱՆԻ

Ամուսնութիւնը կը կատարուի այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին, Փարիզի Ս. Յովհաննէս – Մկրտիչ եկեղեցւոյ մէջ:

Մասնաւոր հրաւէր չստացողներէն կը խնդրուի ներկայ իբրեւ այդ նկատել :

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Տատուրեան ընտանիքը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Պ. Սիմոն եւ Պ. Յովհաննէս Պուլանեանի եւ պարագաներուն (Սալէն տը Ժիրօ) իրենց ողբացեալ մօր եւ ազգականին՝ Տիկին Սառա Պուլանեանի մահուան առթիւ: Եւ փոխան ծաղկեպսակի կը նուիրէ տասը Ն. Ֆ. «Յառաջ»ի տարածման եւ տասը Ն. Ֆ. Թէհլիրեան սրահին :

(Սատնալ «Յառաջ»էն):

### 30-ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹԸ
ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ
ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ

Կիրակի, Մարտ 12, կէսօրէ վերջ ժամը 2·30ին, Սալ տը լա Շիմի, 28պիս, Րիւ Սէն Տօմինիք :

Կը խնդրուի նկատի առնել այս թուականը :

### ՎԵՐԱՄՈՒՏ

Ֆ. Կ. Խաչի Տէսինի Ազգ. դպրոցի դասաւանդութիւնները կը սկսին Սեպտեմբեր 16ի Ուրբաթ օր: Միեւնոյն առեն կը կատարուին նորերու արձանագրութիւնները :

Դասաւանդութեանց օրերն ու ժամերը կը մնան նոյնը :

Կը խնդրուի ծնողքներէն սկիզբէն ղրկել իրենց զաւակները :

### Կ'ՈՒԶՈՒԻ

Երեք երախայով, հայ ընտանիք մը առանձին սարեց կին մը կը փնտռէ որ գլխաւորաբար ինը ամսու պզտիկով մը պիտի զբաղի: Ուտելիք եւ բնակարան ապահովուած, տունը սպասուհի մը կայ որ պիտի օգնէ տիկնոջ: Պայմաններու համար հեռաձայնել՝ MIC. 76-49

Ժամը 18էն ետք, բացի երկուշաբթի օրերէն:





### ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

Վարժարանը կը վերաբացուի, երկուշաբթի առաւօտ, Սեպտեմբեր 19ին:

### Կ'ՈՒԶՈՒԻ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանը պէտք ունի կնոջ մը, ընդհանուր մաքրութեան համար: Դիմել հաստատութեան 1 Պուլվար տիւ Նոռ, Լը Ռէնսի:

Հեռաձայն՝ 97–01–72:

### ՎԵՐԱԲԱՑՈՒՄ

Շաւիլի հայկական դպրոցի վերաբացումը այս Հինգշաբթի 15 Սեպտեմբեր, 1960ին, ուսուցչութեամբ Տիկին Գեղան Շիրինեան – Փափազեանի: Արձանագրութեանց համար դիմել՝ 4 Րիւ տէ Թառա Շանթիէ: Ժամը 9-12 եւ 2-4 :

### ՎԵՐԱՄՈՒՏ
ԽՐԻՄԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Իսիի Խրիմեան վարժարանը կը վերաբացուի Սեպտեմբեր 15ին:

Ծնողքներէն անյապաղ կը խնդրուի արձանագրել տալ իրենց զաւակները :

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Այս Կիրակի՝ ժամը 10ին ձայնաւոր պատարագ :

Պիտի պատարագէ եւ քարոզէ Փարիզ նոր ժամանած՝

ՏԷՐ ՅՈՎՀ. Վ. ԳՈՅՈՒՆԵԱՆ՝

Աթէնքի Հայ Կաթողիկէներու ժողովրդապետը:

### ՎԵՐԱՄՈՒՏ

Լիոնի Հայկազեան վարժարանի

Ազգ. Միութիւնը կը հաղորդէ թէ «Հայկազեան» վարժարանը կը վերաբացուի այս Հինգշաբթի առաւօտ :

Կը խնդրուի բոլոր ծնողքներէն որ իրենց զաւակները արձանագրել տան խորհրդարանը որ բաց է ամէն օր ժամը 14էն 19 :

Կարեւոր ազդարարութիւն մը եւս, կը խնդրուի նմանապէս բոլոր ծնողքներէ որ, հաճին անպայման ներկայ ըլլալ այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3·30ին, եկեղեցւոյ սրահը, ուր կարեւոր տեղեկութիւններ պիտի տրուին Կրթ. գործի նըկատմամբ առնուած բացառիկ միջոցներու շուրջ :

Ազգ. Միութեան տուած որոշումները կիրարկելի պիտի ըլլան, այս ժողովին հաւանութեան արժանանալէ վերջ եւ պիտի ըլլան կարծիքի փոխանակութիւններ:

Imprimerie Spéciale du journal « Haratch »



### ԳԱՂԹԱԿԱՆ ԵՒ ՖՐԱՆՍԱՀՊԱՏԱԿ ՀԱՅԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Գաղթականաց Գրասենեակը կը տեղեկացնէ թէ իրաւասու է տալու ծննդեան և ամուսնական վկայագրեր ոչ միայն գաղթական այլև Ֆրանսահպատակ Հայերուն, որոնք ներկայիս պէտք ունին անոնց՝ յատկապէս իրենց ինքնութեան թուղթերը վերանորոգելու համար:

Որոշ պարագաներու մէջ, Հայկական Գրասենեակը կրնայ այդ վկայականները տալ նաեւ օտար հպատակութիւն ունեցող Հայերու:

Գրաւոր կամ անձամբ դիմել՝

OFFICE FRANÇAIS de PROTECTION
des RÉFUGIÉS et APATRIDES
Service Arménien, Bureau N. 192
23, Rue La Pérouse, PARIS, 16 Métro : KLEBER

Խիստ կարեւոր.— Աւելորդ դրամ եւ ժամանակ չվատնելու համար, անձամբ ներկայանալու պարագային՝ մուտքին հարցնել միայն եւ դիմել ուղղակի Հայկական Գրասենեակը, թիւ 192: Այլապէս, այցելուն սխալ տեղ կ'առաջնորդուի եւ աւելորդ անպատեհութիւններու կը հանդիպի:

Այս առթիւ Գրասենեակը կը յիշեցնէ թէ 3 տարուան տեւողութեամբ տրուած «Հայ գաղթականի վկայագիրը», պարտաւորիչ է վերանորոգել իր ատենին:

Մարսէյլի եւ շրջակայքի հայրենակիցները իրենց դիւրութեան համար կրնան դիմել՝ առաջնորդարան,

26, RUE DES CONVALESCENTS

### ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ ՄԱՐՍԷՅԼ

Պաշտամունք՝ ամէն Կիրակի առաւօտ, Սէն Ժերոմ, ժամը 9·30ին, Մարսէյլ, ժամը 10·45ին, Րիւ Ժէմափ, թիւ 20 :

Պիտի քարոզէ Վեր. Յրբ. Հելվաճեան:

### Հ. Յ. Դ.
ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դաշնակցութեան «Վարանդեան» կոմիտէն՝ ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները այս Ուրբաթ իրիկուն ժամը 20·30ին, Յոյներու սրահը: Կարեւոր օրակարգ :

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արցունեան» խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21·30ին, սովորական հաւաքատեղին :

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր ընկերները այս Շաբաթ, ժամը 21ին, «Խրիմեան» դպրոցին մէջ: Կարեւոր օրակարգ :

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէի ընդհ. ժողովը, այս Շաբաթ իրիկուն, ժամը 8·30ին, Ահարոնեան ակումբը: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է :

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ Մարսէյլի մասնաճիւղերուն ընդհ. ժողովները տեղի պիտի ունենան հետեւեալ թուականներուն.—

ՍԷՆ ԺԵՐՈՄ՝ այս Չորեքշաբթի ժամը 3ին :

ՄԱՐՍԷՅԼ քաղաք՝ այս Հինգշաբթի ժամը 3ին :

ՊԼ. ՕՍՍՕ՝ այս Ուրբաթ ժամը 3ին :

ՊՕՄՈՆ՝ այս Շաբաթ ժամը 3ին:

ՍԷՆ ԼՈՒ՝ այս Շաբաթ երեկոյեան ժամը 9ին:

Այս ժողովներուն ներկայ պիտի ըլլայ Ֆ. Կ. Խաչի Կեդր. վարչութեան ներկայացուցիչը : Կը խնդրուի բոլոր անդամուհիներէն ներկայ գտնուիլ :

Գ. Անդրանիկ Յակոբեան,
Տիկին Նուարդ (Թաքէլ) Երամեան,
Տէր եւ Տիկին Առաքել Յարութիւնեան,
Տիկին Հայկանուշ Յարութիւնեան,
Տէր եւ Տիկին Բ. Կ. Ժամկոչեան (Լիբանան),
Տէր եւ Տիկին Գալուստ Քիլիթճեան,
Տէր եւ Տիկին Գասպար Էմիրեան եւ որդիք,
Տէր եւ Տիկին Ժան Վարդանեան եւ զաւակը,
Օր. եւ Գ. Մ. եւ Մ. Յակոբեան,
Տիկին Մ. Պօղոյեան եւ որդիք (Պաղտատ),
Տէր եւ Տիկին Յ. Պօղոյեան եւ զաւակները (Հալէպ),
Օր. Վերժինիա Պօղոյեան,
Տիկին Վ. Քէպապճեան եւ զաւակները,
Տէր եւ Տիկին Մ. Քէպապճեան եւ որդիք,
Տէր եւ Տիկին Ս. Քէպապճեան եւ զաւակները,
Մայր եւ զաւակները Կիրիկեան,
Եւ համայն Պօղոյեան, Ֆէրմանեան եւ Կիրիկեան ընտանիքներն ու բարեկամները կը ծանուցանեն իրենց կնոջ, աղջկան, քրոջ, զարմուհիին եւ ազգականուհիին՝

ՄԱՐԻ – ԼՈՒՍԻՆ (ԵՐԱՄԵԱՆ) ՅԱԿՈԲԵԱՆԻ
1931 – 1960

մահը որ տեղի ունեցաւ 22 Օգոստոս, 1960ին՝ ինքնաշարժի արկածով՝ Թուրքիա։

Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը տեղի պիտի ունենայ Ալֆորվիլի Ս. Պօղոս եկեղեցին՝ Շաբաթ առաւօտ, 17 Սեպտեմբեր, ժամը 10.30ին։ Մարմինը պիտի հանգչի Ալֆորվիլի գերեզմանատան՝ ընտանեկան դամբարանին մէջ։

Մասնագիտ չստացողներէն կը խնդրուի ներողամիտ գտնուիլ եւ ներկայս ընդունիլ առ այդ։

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

ՅԱԿՈԲ ՏԷՐ – ՅԱԿՈԲԵԱՆԻ
ՄԱՀՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Փոխան ծաղկեպսակի Տէր եւ Տիկին Հրանտ Սամուէլեան յիսուն Ն. Ֆ. կը նուիրեն Մշակոյթի Տան Սողոմոն Թէհլիրեան սրահին։

×

Տէր եւ Տիկին Սահակ Արլճեան քսանական Ն. Ֆ. կը նուիրեն «Յառաջ»ին եւ «Հայ – Բոյժ»ին։

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տիկին Ատրինէ Նուրեանի մահուան առթիւ Գ. Վահան Խրոըշեան քսան Ն. Ֆ. կը նուիրէ Կարմիր Խաչին, քսան Ն. Ֆ. Կապոյտ Խաչին եւ տասը Ն. Ֆ. Սողոմոն Թէհլիրեան սրահին։ (Ստանալ «Յառաջ»էն)։

## ԱԶԴ

Հայաստանեայց Սուրբ պատուանշանի ընկերակցութիւնն պատիւն ունի յայտնելու թէ՝ այս Կիրակի օր, Արարայի հերոսամարտի տարեդարձին առթիւ, ընկերակցութիւնս հրաւիրուած է Անծանօթ Զինուորին դամբարանին բոցը արծարծելու եւ՝ կը հրաւիրէ Փարիզի եւ արուարձաններու Հայութիւնը որ իր ներկայութեամբ պատուէ Արարայի վրայ ինկած Հայ Մարտիկներուն յիշատակը։

Ժամադրութիւն երեկոյեան ժամը վեցին էթուալի հրապարակը։

## ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆ

Լը Փէք

Բացուած են արձանագրութիւնները

**1960-1961**

Ուսումնական տարեշրջանին համար։

Տասը տարեկանէն սկսեալ երկրորդական վարժարանի որեւէ դասարանի ուսանող աշակերտ կ'ընդունուի։ Ուսման ծրագիրն է դասական ընթացք (Քուր քըլասիք)։

Դպրոցական տարեկան թոշակն է 1.500 Ն. Ֆրանք։

ÉCOLE APOSTOLIQUE
3, Ave. de Grandchamp, LE PECQ (S. et O.)
Tél : 963-0172

Imprimerie Spéciale du journal « Haratch »

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ
ՍԵՒՐ

**1960-1961**

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ՄՈՒՏՔԸ՝
ԵՐԿՈՒՇԱԲԹԻ 19 ՍԵՊՏԵՄԲԵՐ
ԺԱՄԸ 8էն 18

## Կ'ՈՒԶՈՒԻ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանը պէտք ունի կնոջ մը, ընդհանուր մաքրութեան համար։ Դիմել հաստատութեան 1 Պուլվար տիւ Նոռ, Լը Ռէնսի։
Հեռաձայն՝ 927-01-72։

### ՎԵՐԱԲԱՑՈՒՄ

Շաւիլի հայկական դպրոցի վերաբացումը այս Հինգշաբթի 15 Սեպտեմբեր, 1960ին, ուսուցչութեամբ Տիկին Գեղան Շինիկճեան – Փափազեանի։ Արձանագրութեանց համար դիմել՝ 4 Րիւ տէ Թռուա Շանքիէ։ Ժամը 9-12 եւ 2-4։

### ՎԵՐԱՄՈՒՏ
### ԽՐԻՄԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Իսիի Խրիմեան վարժարանը կը վերաբացուի Սեպտեմբեր 15ին։

Ծնողքներէն անյապաղ կը խնդրուի արձանագրել տալ իրենց զաւակները։

### ՎԵՐԱՄՈՒՏ

Ֆ. Կ. Խաչի Տէօինի Ազգ. դպրոցի դասաւանդութիւնները կը սկսին Սեպտեմբեր 16ի Ուրբաթ օր։ Միեւնոյն ատեն կը կատարուին նորերու արձանագրութիւնները։

Դասաւանդութեանց օրերն ու ժամերը կը մնան նոյնը։

Կը խնդրուի ծնողքներէն սկիզբէն ղրկել իրենց զաւակները։

### ՎԵՐԱՄՈՒՏ
Լիոնի Հայկազեան վարժարանի

Ազգ. Միութիւնը կը հաղորդէ թէ «Հայկազեան» վարժարանը վերբացուած է։

Կարեւոր ազդարարութիւն մը եւս, կը խնդրուի նմանապէս բոլոր ծնողքներէ որ, հաճին անպայման ներկայ ըլլալ այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3.30ին, եկեղեցւոյ սրահը, ուր կարեւոր տեղեկութիւններ պիտի տրուին Կրթ. գործի նըկատմամբ առնուած բացառիկ միջոցներու շուրջ։

Ազգ. Միութեան առած որոշումները կիրարկելի պիտի ըլլան այս ժողովին հաւանութեան արժանանալէ վերջ եւ պիտի ըլլան կարծիքի փոխանակութիւններ։

### ՊԱՏԱՐԱԳ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Տէսինի Կրօն. Ընկերակցութիւն կը ծանուցանէ թէ, այս Կիրակի առաւօտ ժամը 8.30ին պատարագ պիտի մատուցուի տեղւոյս Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ։ Կը պատարագէ Տէր Վարագ Քհնյ. Աւագեան։ Հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի հանգուցեալ Այրի Տիկին Աղնիւ Քէօյլէյեանի մահուան քառասունքին առթիւ։

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Այս Կիրակի՝ ժամը 10ին ձայնաւոր պատարագ։

Պիտի պատարագէ եւ քարոզէ Փարիզ նոր ժամանած՝

ՏԷՐ ՅՈՎՀ. Վ. ԳՈՑՈՒՆԵԱՆ՝
Աթէնքի Հայ Կաթողիկէներու ժողովրդապետ։

## Կ'ՈՒԶՈՒԻ

Երիտասարդ, աշխոյժ եւ առկուն երիտասարդ մը՝ 25էն 40 տարեկան, իբրեւ

Chauffeur-Livreur

Դիմել անձամբ թերթիս վարչութեան։



### ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

Վարժարանը կը վերաբացուի, երկուշաբթի առաւօտ, Սեպտեմբեր 19ին։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. ԿԱԳ. ԽԱՉԻ Մարսէյլի մասնաճիւղերուն ընդհ. ժողովները տեղի պիտի ունենան հետեւեալ թուականներուն.—

ՍԷՆ ԺԵՐՈՄ՝ այս Չորեքշաբթի ժամը 3ին։

ՄԱՐՍԷՅԼ քաղաք՝ այս Հինգշաբթի ժամը 3ին։

ՊԼ. ՕՏՏՕ՝ այս Ուրբաթ ժամը 3ին։

ՊՕՄՈՆ՝ այս Շաբաթ ժամը 3ին։

ՍԷՆ ԼՈՒ՝ այս Շաբաթ երեկոյեան ժամը 9ին։

Այս ժողովներուն ներկայ պիտի ըլլայ Ֆ. Կ. Խաչի Կեդր. վարչութեան ներկայացուցիչը։ Կը խնդրուի բոլոր անդամուհիներէն ներկայ գտնուիլ։

## Հ. Յ. Դ.
ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21.30ին, սովորական հաւաքատեղին։

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր ընկերները այս Շաբաթ, ժամը 21ին, «Խրիմեան» դպրոցին մէջ։ Կարեւոր օրակարգ։

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէի ընդհ. ժողովը, այս Շաբաթ իրիկուն, ժամը 8.30ին, Ահարոնեան ակումբը. Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է։

ՍԱՐՍԷԼ – ԱՌՆՈՒՎԻԼ Հ. Յ. Դ. Վարդան ենթակոմիտէի ժողովը այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, սովորական հաւաքատեղին։

յայտարարած է․ — «Որպէսզի տանելի ըլլայ այն հետապնդումը, որուն ենթար– կուած է Արեւմտեան Պերլին, պէտք է մտոյիկ ըլլանք։ Որքան մեծ բառեր քիչ գործածենք, այնքան մեծ պիտի ըլլայ մեր հակառակորդին յուսախաբութիւնը», Ա– րեւմտեան Պերլինի քաղաքապետը՝ Վ․ Պրանտ իր կարգին յայտարարած է Ա– րեւմտեան լրագրողի մը․— «Գոն, դաշ– նակիցները եւ մենք գիտենք թէ ինչ պի– տի ընենք»։ Այս առթիւ գիտել տուած է գաղտնի ծրագիր մը պատրաստած են ձա– խողեցնելու համար Արեւմտեան Պերլինը գրաւելու Փանքոյի ծրագիրը։

ՆԵՀՐՈՒ Փաքիստան պիտի այցելէ Սեպտեմբեր 19էն 23, ու պիտի ստորագրէ Հինտուս գետի ջուրերու օգտագործումին շուրջ, Հնդկաստան – Փաքիստան համա– ձայնագիրը։ Երկու երկիրներու յարաբե– րութեան մէջ կարեւոր քայլ մը կը նկատ– ուի։

ԱՐԱԲ Միացեալ Հանրապետութեան արտաքին նախարարը՝ Մահմուտ Ֆավզի Օսլոյի մէջ լրագրողներուն յայտարա– րեց, թէ նախագահ Նասր ՄԱԿի ժողովին պիտի առաջարկէ որ «վերջ դրուի Ալժե– րիոյ ժողովուրդին դէմ Ֆրանսայի յար– ձակումին»։



## Ի ՊԱՏԻՒ
## ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ

Փարիզի Հայոց Եկեղեցւոյ Վարչու– թիւնը հացկերոյթ մը պիտի տայ ի պա– տիւ Ամենայն Հայոց Կաթողիկոսին, յա– ռաջիկայ ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, երեկոյեան ժա– մը 8ին,

HOTEL LUTETIA, 43, Bd. Raspail

Արձանագրութեան համար դիմել եկե– ղեցւոյ դիւանատունը։

Ճաշագին՝ 30 Ն․ Ֆ․։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է ի նպաստ իր դպրոցին Տէր եւ Տիկին Մ․ Անտոնեա– նէ երեսուն Ն․ Ֆ․, իրենց զաւկին, Գ․ Համբարձումի ամուսնութեան ուրախ առիթով։

## ՎԵՐԱՄՈՒՏ

Կապոյտ Խաչի Մարսէյլի մասնաճիւղի դպրոցը կը վերաբացուի այս Հինգշաբթի (Սեպտ․ 22) ժամը 9էն 12, ուսուցչու– թեամբ Տիկին Հազարեանի,

26, RUE DES CONVALESCENTS

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Սեպտեմբեր 22ին կը վերաբացուին ե– կեղեցւոյ հովանաւորութեան տակ բաց– ուած Հինգշաբթի օրուան հայերէնի բո– լոր վարժարանները հետեւեալ վայրերուն մէջ․—

Ժանթիյի 22 Րիւ Վիքթոր Հիւկօ։

Ալֆորվիլ, տեղւոյն ֆրանսական դպրո– ցի սրահին մէջ։

Պուա Քոլոմպ Անիէռ, Րիւ Մարի Լոռ, Պուա Քոլոմպ։

Շավիլ, եկեղեցւոյ յարակից սրահին մէջ։

Պելվիլ Լիլա, 48 Րիւ տէ Սոլիէթէռ, Փարիզ (19)։

Գանեէռյ Քաշան, 24 Րիւ Հայկ Դպիր– եան։

Եկեղեցւոյ կեդրոնական եւ կիրակնօր– եայ դասընթացքները, Առնուվիլ եկե– ղեցւոյ յարակից սրահին մէջ։

Կը խնդրուի ծնողքներէն արձանագրել տալ իրենց զաւակները նշանակուած թա– ղամասերուն մէջ։

ԴԻՒԱՆ

Imprimerie Spéciale du journal « Haratch »



## ՆՈՐԵՐՈՒ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

Մարսէյլէն Սիմոն Խանոյեան յաջո– ղութեամբ աւարտած է բժշկական հա– մալսարանը եւ մասնաւոր շնորհաւորու– թեան արժանացած է իր թէզը։

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը տեղի պիտի ունենայ Հոկտեմբեր ութին, Մարսէյլ, Ալհամպրայի շքեղ սրահներուն մէջ։

Մանրամասնութիւնները յաջորդով։

×

ԼԻՈՆ․— Ապրացեալ Սողոմոն Թէհլիր– եանի սգահանդէսը տեղի կ'ունենայ Սեպ– տեմբեր 24 շաբաթ երեկոյ Ռիւ Տիւնուա– ռի սրահին մէջ։

Մանրամասնութիւնները շուտով։

×

«ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»ը 8 Հոկտեմ– բեր, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առա– ւօտ, Հինգերորդ թաղամասին քաղաքա– պետարանի շքեղ սրահներուն մէջ։

×

Հանդիսաւոր տօնակատարութիւն Սոր– պոնի մէջ, 9 Հոկտեմբեր 1960, բոլոր դպ– րոցներու մասնակցութեամբ։



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԼԻՈՆ․— Ֆ․ Կ․ Խաչի վարչութիւ– նը․ ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ան– կերուհիները այս Չորեքշաբթի ժամը 16– ին, եկեղեցիին սրահը։ Ներկայ կ'ըլլայ կեդր․ վարչութեան ներկայացուցիչ։ Կարեւոր օրակարգ, ընտրութիւն վարչու– թեան։

Պարտաւորիչ ներկայութիւն։

## Կ'ՈՒԶՈՒԻ

Երիտասարդ, աշխոյժ եւ տոկուն երի– տասարդ մը՝ 25էն 40 տարեկան, իբրեւ

Chauffeur-Livreur

Դիմել անձամբ թերթիս վարչութեան։

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70-ԱՄԵԱԿԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ՀՈԿՏ. 3-ԻՆ

### ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

## Communiqué

Գեղարուեստի ամէնէն ծանօթ դերասանները ընդունած են Ի. Սէնթբրի Ֆոնտի եւ Փարիզեան Մամուլի Ընկերակցութեան հրաւէրը, ներկայ ըլլալու Մամուլի բարենպատակ ձեռնարկներու՝ է նըպաստ տրուած կալայէն :

## Le Milliardaire

Ժապաւէնը պիտի ցուցադրուի այդ իրիկուն : Դերասաններն են՝

**Marilyn MONROE**
**et Yves MONTAND**

Հոկտեմբեր 3ին, ժամը 20·30ին :

Retenir les places au palais de Chaillot et au Soutien Confraternel des Journalistes
14, Rond-Point des Champs-Elysées
(Rez de Chaussée) de 10 à 30 N.F.

## ՆՈՒԷՐ

ԼԻՈՆ.— Տէր եւ Տիկին Գարեգին Համբէլեան՝ Գ. Յակոբ Գոչումեանի տխուր մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի 10 Ն. Ֆ. կը նուիրեն «Յառաջ»ին :

## ՀՐԱՉ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Հրաչ Սարգիսեանի մահուան 6րդ տարեդարձին առթիւ Այրի Տիկին Արշալոյս Սարգիսեան 30ական Ն. Ֆ. կը նուիրէ Կարմիր եւ Կապոյտ Խաչերու օգնութեան կայաններուն եւ Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ Կրթական ձեռնարկներուն :

(Սատոնայ «Յառաջ»էն) :

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

Ընդհանուր ժողովը՝ Ուրբաթ, Սեպտեմբեր 30ին, ժամը 20·30ին, Մշակոյթի Տան մէջ (17 Րիւ Պլէօ) :

Կարեւոր օրակարգ :

Բոլոր ընկեր-ընկերուհիներուն ներկայութիւնը պարտաւորիչ է :

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Մարսիլիաբնակ Տիկին Անուշ Զատիկեան կը փնտռէ իր եղբայրները, Կարապետ եւ Աւետիս Քիւրքճեան, Եօզղաթցի, որոնք 1920–23 Պոլսոյ որբանոցներու մէջ եղած են : Հօր անունը՝ Արթաքի, մօրը անունը՝ Եղիսաբէթ : Եօզղաթցի Քիւրքճի Եսայիի թոռները : Գրել.— Խօսրով քհնյ. Առաքելեանի,

339, Ave. du Prado, Marseille (8e)

ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆ. ՄԱՐՄԻՆԸ շնորհակալութեամբ ստացած է երեսուն Ն. Ֆ. Օր. Տիրուհի Անդրէասեանէ, Տիկին Վերժին Յովհաննէսեանի մահուան առթիւ :

## ԾՆՈՂՔՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

ՍԵՒՐԻ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ արձանագրութիւնները չափէն աւելի լեցուած ըլլալով, տեսչութիւնը կը խնդրէ որ նոր դիմումներ չկատարուին նամակով կամ հեռաձայնով :

## 30-ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹԸ

### ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ

Կիրակի, Մարտ 12, կէսօրէ վերջ ժամը 2·30ին, Սալ տը լա Շիմի, 28պիս, Րիւ Սէն Տոմինիք :

Կը խնդրուի նկատի առնել այս թուականը :

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— «Դաշնակցութեան Օր»ը տեղի պիտի ունենայ Նոյեմբեր 5ի Շաբաթ իրիկունը Րիւ Տիւնուառի սրահին մէջ :

## ՎԵՐԱԲԱՑՈՒՄ

Հայկազեան վարժարանի
32, Rue de Trévise, PARIS (9e)

Ամէն Հինգշաբթի Հոկտեմբեր 6էն սկսեալ ժամը 14ին, կը դասաւանդէ Տիկին Այվազեան :

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Սեւրի Մուրատեան Վարժարանի հանգերձատան համար երկու կիներ կ'ուզուին, 40էն 60 տարեկան : Դիմել ուղղակի վարժարանի տնօրէնութեան :

Հեռախօս՝ OBS. 18-28

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Տէօրինի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները այս Ուրբաթ կէսօրէ ետք ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան ներքնայարկը :

Ներկայ պիտի ըլլան Կեդր. վարչութեան ներկայացուցիչները : Կարեւոր օրակարգ : Նոր վարչութեան ընտրութիւն. Կը խնդրուի չբացակայիլ :

Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի նկատուի :

## ՀԻՒԱՆԴՈՒԹԵԱՆ ՊԱՏՃԱՌՈՎ

## ԾԱԽՈՒ Է

Հիւսուածեղէնի մեքենաներ ամբողջ մոթէօրներով :

| | | | |
|---|---|---|---|
| Jacquard | Jauge 10-1 | m 20 | |
| | J. | 9 | 80 |
| | J. | 10 | 70 |
| | J. | 7 | 80 |

1 bobinoir à 6 branches

1 machine à bande avec tout le matériel revisé, état neuf.

Ամէնը՝ 6500 Ն. Ֆ. :

Կը փնտռուի մէկը ընկերութեան համար կամ աշխատանոց մը ղեկավարելու համար կարող մէկը :

Դիմել՝

**Henry**
1, Passage du Poteau, Paris 18e
MON. 38-24

Imprimerie Spéciale du journal « Haratch »

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70-ԱՄԵԱԿԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ՝ ՀՈԿՏ. 8-ԻՆ

### ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

կրնար գոյութիւն ունենալ կամ «եթէ գոյութիւն ունենան, ես կ'ուզեմ որ Մալինովսքին ըլլայ անոնց հրամանատարը, աղուոր զինուոր է, բայց Ամերիկացիները պիտի ուզեն որ անոնց հրամանատարը ... Օհ, ի՞նչ է անունը, Կրոմիքօ օգնէ, Ատլանտեան հրամանատարը ով է» Կնո-միքօ.— «Նորսթատ»։ Խրուշչեւ կը շարունակէ.— «Այո, ես ալ ան չեմ ուզեր, արդէն Մալինովսքին աւելի լաւ զինուորական է»։

Վերջապէս մէկը կը հարցնէ թէ ինչո՞ւ միջամտեց Հունգարիա, ինք որ դէմ է «ներքին խնդիրներու օտար միջամտութեանց»։ «Միջամտեցի, կ'ըսէ խորհրդային վարչապետը, Հունգարիոյ կառավարութեան դիմումին վրայ ճզմելու համար Մոսլիթիւի նման մարդիկ»։

ՄԱԿի օրակարգին վրայ արձանագրուեցաւ Հունգարիոյ հարցը հակառակ Քատարի (Հունգար վարչապետը) բողոքին։

Ըստ կարգ մը գրոյցներու Թուսերը մարդ մը գրկած են անջրպետին մէջ։ Այս լուրը հետեւանքն է այն խօսքին թէ «Երեքշաբթի, պատմական օր մը պիտի ըլլայ» ։ Թէեւ Խրուշչեւ հերքեց։ Այդընթացքը Նիւ Եորք վերադարձաւ, ուր պիտի տեսնուի Մաք Միլլընի հետ։

---

CONTRIBUTION A LA PREHISTOIRE DU MOYEN ORIENT A LA LUMIERE DE L'IDIOME SUMERO - ARMENIEN

Par Docteur C. G. GULBENKIAN

Les Sumériens, les Prohittites, les Haïs, les Arameens, les Inscriptions urartiennes, les Hurris, les Arméniens.

Editions G. P. Maisonneuve, Besson et Chantemerle Succ. 198 Bld. Saint Germain, Paris.

Prix : 12 N.F.

Այս գիրքին մէջ հեղինակը չորս հարիւրէ աւելի նոյնաձայն բառերու յիշատակութեամբ երեւան կը հանէ Սումերներու եւ Հայերու ազգակցութիւնը, ինչպէս նաեւ գոյութիւնը սումերահայ բարբառի մը, որ ոչ միայն մեծապէս սատարած է հայ լեզուի կազմութեան, այլ եւ Հայաստանի, Հաթթիի եւ Ուրարտուի բարբառներուն։

Նոյնպէս տեղական եւ յատուկ անուններու ստուգաբանութեամբ սումերահայ բարբառով ի յայտ կը բերէ Հայերուն եւ Նախահիթթիթներուն ազգակցութիւնը, Հայ անուան ծագումը եւ նշանակութիւնը, արամական արշաւանք մը Հայաստան, դասականներուն անծանօթ, ինչպէս նաեւ հայ – հուրրիական դիցաբանութեան մը գոյութիւնը։

Գիրքը կը վերջանայ, ուրարտական արձանագրութիւններուն սումեր – հայերէն բառարանով։

---

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հանդիսաւոր տօնակատարութիւն Սորպոնի մէջ, 9 Հոկտեմբեր 1960, բոլոր դպրոցներու մասնակցութեամբ։



### Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ

Ընդհանուր ժողով՝ Ուրբաթ, Սեպտեմբեր 30ին, ժամը 20-30ին, Միջակոյթի Տան մէջ (17 Րիւ Պլէօ)։

Կարեւոր օրակարգ։

Բոլոր ընկեր – ընկերուհիներուն ներկայութիւնը պարտաւորիչ է։

---

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Գ. Անդրանիկ Յակոբեան, Այրի Տիկին Նուարդ Երամեան, Տէր եւ Տիկին Առաքել Ցարութիւնեան, Տէր եւ Տիկին Գալուստ Քիլիթճեան, ինչպէս նաեւ Խմիրեան, Վարդանեան, Յակոբեան, Ժամկոչեան, Պօղոսեան, Կարապետեան, Ղարիպեան եւ Գուրգէնեան ընտանիքները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակով կամ փոխան ծաղկեպսակի նուէրներով ցաւակցութիւն յայտնեցին իրենց կնոջ, զաւկին, քրոջ եւ ազգականին՝

ՄԱՐԻ – ԼՈՒՍԻՆ ՅԱԿՈԲԵԱՆԻ
(Ծնեալ Երամեան)

դառնալէտ մահուան առթիւ։

---

## ԳՐԱՏՈՒՆ ՊԱՐՍԱՄԵԱՆ

46, Rue Richer - Paris (9e)
C. C. P. Paris 3630 - 66
Tél. : PROvence 64 - 90

Նոր Հրատարակութիւններ

— ԽԻՆԴ ՈՒ ԺՊԻՏ (հատընտիր երգիծանքի եւ ծիծաղի հայ եւ օտար վարպետներէն), կազմեց՝ Կարօ Գէորգեան, Պէյրութ 1960։

Թղթատարի ծախքով լաթակազմ 18,00
Թղթատարի ծախքով թղթակազմ 15,50

— ՆՈՐ ԿԻՆԸ (Վէպ), Էլլէն Բիւզանդ, Թեհրան, 1960։ 5,00 Ն.Ֆ.

— ԱՆԾԱՆՕԹ (Վէպ), Էլլէն Բիւզանդ 2,00 Ն.Ֆ.

— ԱԶԳԱՊԱՏՈՒՄ, Մ. Արք. Օրմանեան, նոր տպագրութիւն, Ա. հատոր, բաղկացած 3 գիրքերէ։ Գինը 24,00 Ն.Ֆ. Բ. հատորէն, մէկ գիրք 8,00 Ն.Ֆ.

— ՏԻԳ ՈՒ ՏԱԹ, Թէոդիկ (սպառած գիրք), պատկերազարդ, կազմուածը 20,00. Թղթակազմը 15.00 Ն. Ֆ.

— ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, Հր. Փաստրմաճեանի, հայ. թարգմ. 2 հատորով 20 Ն. Ֆ.։

— ՏՐԴԱՏ ԵՒ ՈՒՐԻՇ ՏԱՍԸ ԹԱՏՐԵՐԳՈՒԹԻՒՆ, Եղիա Գասպարեան, Գահիրէ, 1939. 10.00 Ն. Ֆ.։



Imprimerie Spéciale du journal « Haratch »

### ԳԱՂԹԱԿԱՆ ԵՒ ՖՐԱՆՍԱՀՊԱՏԱԿ ՀԱՅԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Գաղթականաց Գրասենեակը կը տեղեկացնէ թէ իրաւասու է տալու ծննդեան եւ ամուսնական վկայագրեր ոչ միայն գաղթական այլեւ Ֆրանսահպատակ Հայերուն, որոնք ներկայիս պէտք ունին անոնց՝ յատկապէս իրենց ինքնութեան թուղթերը վերանորոգելու համար։

Որոշ պարագաներու մէջ, Հայկական Գրասենեակը կրնայ այդ վկայականները տալ նաեւ օտար հպատակութիւն ունեցող Հայերու։

Գրաւոր կամ անձամբ դիմել՝

OFFICE FRANÇAIS de PROTECTION
des RÉFUGIÉS et APATRIDES
Service Arménien, Bureau N. 192
23, Rue La Pérouse, PARIS, 16 Métro : KLEBER

Խիստ կարեւոր.— Աւելորդ դրամ եւ ժամանակ չվատնելու համար, անձամբ ներկայանալու պարագային՝ մուտքին հարցնել միայն եւ դիմել ուղղակի Հայկական Գրասենեակը, թիւ 192։ Այլապէս, այցելուն սխալ տեղ կ'առաջնորդուի եւ աւելորդ անպատեհութիւններու կը հանդիպի։

Այս առթիւ Գրասենեակը կը յիշեցնէ թէ 3 տարուան տեւողութեամբ տրուած «Հայ գաղթականի վկայագիրը», պարտաւորիչ է վերանորոգել իր ատենին։

Մարսէյլի եւ շրջակայքի հայրենակիցները իրենց դիւրութեան համար կրնան դիմել՝ առաջնորդարան,

26, RUE DES CONVALESCENTS

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Տէսինի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները այս Ուրբաթ կէսօրէ ետք ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան ներքնայարկը։

Ներկայ պիտի ըլլան Կեդր. վարչութեան ներկայացուցիչները։ Կարեւոր օրակարգ։ Նոր վարչութեան ընտրութիւն։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։

Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի նկատուի։

---

## 30-ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹԸ
### ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ

Կիրակի, Մարտ 12, կէսօրէ վերջ ժամը 2·30ին, Սալ տը լա Շիմի, 28պիս, Րիւ Սէն Տոմինիք։

Կը խնդրուի նկատի առնել այս թուականը։

---

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— «Դաշնակցութեան Օր»ը տեղի պիտի ունենայ Նոյեմբեր 5ի Շաբաթ իրիկունը Րիւ Տիւնուառի սրահին մէջ։

×

Այլքաստախնամի տարեկան պարահանդէսը ժորժ Ե.ի շքեղ սրահներուն մէջ, Կիրակի, Հոկտեմբեր 30ին, ժամը 17էն 24։

---

### Կ'ՈՒԶՈՒԻՆ

Սեւրի Մուրատեան Վարժարանի հանգերձատան համար երկու կիներ կ'ուզուին, 40էն 60 տարեկան։ Դիմել ուղղակի վարժարանի մատակարարութեան։

Հեռախօս՝ OBS. 18-28

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տիկին Լուսի Ցախըրեանի կսկծալի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի, Սանփան Ինճեան եւ Տէր եւ Տիկին Ցարութիւն Ինճեան յիսունական Ն. Ֆ. կը նուիրեն Կապոյտ Խաչին: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Տոքթ. Կարպիս Փանոսեան, Տէր եւ Տիկին Արման Խարբութեան, Օր. Նատիա Փանոսեան, Այրի Տիկին Վարդուհի Զաքարեան եւ ընտանեկան բոլոր պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, դրաւոր կամ ծաղկեպսակով մասնակցեցան իրենց խոր սուգին, իրենց զաւկին, քրոջ եւ թոռան՝

ՄԱՐԻՆԱՅԻ

ցաւոն կորուստին առթիւ:

×

Այրի Տիկին Աղաւնի Գարաճեան, Տէր եւ Տիկին Հրանդ Գարաճեան եւ զաւակը՝ Ժաք, Տէր եւ Տիկին Յովհաննէս Սէմէրճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ժիրայր Գարաճեան եւ զաւակները, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, դրաւոր, ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր եւ ազգականին՝

ՆԻԿՈՂՈՍ ԳԱՐԱՃԵԱՆԻ

կսկծալի մահուան առթիւ:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— «Դաշնակցութեան Օր»ը տեղի պիտի ունենայ Նոյեմբեր 5ի Շաբաթ իրիկունը Րիւ Տինուառի սրահին մէջ:

## ՎԵՐԱՄՈՒՏ

Ֆ. Կ. Խաչի Գոմոնի մասնաճիւղի վարչութիւնս կը փութայ յայտնել Գոմոնի շրջանի հայ հասարակութեան թէ՝ իր վարժարանին վերաբացումը պիտի կատարուի Հոկտեմբեր վեցին, հինգշաբթի օրը: Արձանագրութիւն, ղասարանական բաժանում եւ դասաւանդութիւն տեղի պիտի ունենան նոյն օրը՝ առաւօտեան ժամը 9էն մինչեւ 12:

Վարժարանին ուսուցիչն է Գ. Վահրամ Մխիթեր: Կը խնդրուի յարգելի ծնողքներէն նկատի ունենալ վերոյիշեալ թուականը:

## ԵՐԵՒԱՆ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԸ

Երեւանի Ռատիօ հաղորդման ժամերն ու ալիքները.— Ամէն կիրակի եւ չորեքշաբթի առաւօտները Փարիզի ժամով 9ին կարճ ալիք 19 եւ 25 մեթրի վրայ:

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70-ԱՄԵԱԿԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ՀՈԿՏ. 8-ԻՆ

### ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

Ընդհանուր ժողովը՝ Ուրբաթ, Սեպտեմբեր 30ին, ժամը 20·30ին, Միշակոյթի Տան մէջ (17 Րիւ Պլէօ):

Կարեւոր օրակարգ:

Բոլոր ընկեր-ընկերուհիներուն ներկայութիւնը պարտաւորիչ է:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Ս. Չթճեան եւ քոյրը՝ Տիկին Գոհար Պետրոսեան (Ամերիկայէն), շնորհակալութիւն կը յայտնեն իրենց բոլոր բարեկամներուն, մասնաւորապէս՝ Երամեան, Օհաննեան եւ Սարգիսեան ընտանիքներուն իրենց ընծայուած ջերմ ընդունելութեան առթիւ (Մարսէյլ), նոյնպէս Տէր եւ Տիկին Գեղամ Աճէմեանի (Փարիզ):

Ամերիկա իրենց մեկնումին առթիւ, Տէր եւ Տիկին Ս. Չթճեան յիսունական Ն. Ֆ. կը նուիրեն «Յառաջ»ի բարգաւաճման եւ Սողոմոն Թէհլիրեան սրահին:

(Ստանալ «Յառաջ»էն):

## ԱԶԴ ԲՈԼՈՐ ՀԱՅ ԼԵԳԷՈՆԱԿԱՆՆԵՐՈՒՆ

Ինչպէս ամէն տարի, Մարսէյլի մէջ տեղի պիտի ունենայ կիրակի Հոկտեմբեր 16ին, տարեկան փառատօնը Հայ Ռազմիկներու Բարեկամական Միութեան, Կիլիկիոյ գրաւման 42րդ տարեդարձին առթիւ: Բոլոր ողջ մնացած լեգէոնական կամաւորները որ Ֆրանսա կը բնակին, հրաւիրուած են ներկայ գտնուելու սոյն հաւաքոյթին, բոլորուած ի շուրջ Միութեան Պատուակալ Նախագահ Գ. Տ. Ց. Թէքէեանի, որ հայաէր հրամանատար Գրնուա տ'Ամիի հետ հիմնեց Հայկական Լեգէոնը 1916ին եւ անկէ ի վեր շարունակեց անձնուիրաբար ծառայել բոլոր մեր ընկերներուն: 65 տարեկանէն վեր դուրսէն եկող հին կամաւորները ձրի պիտի մասնակցին մեր մեծ եղբայրական կէսօրուան հացկերոյթին:

Արձանագրութեան համար դիմել Սեպտեմբերին հետեւեալ հասցէին.—

Secrétariat de l'AVACAF
chez M. Tékéian
2,Rue Paradis MARSEILLE



## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հանդիսաւոր տօնակատարութիւն Սորպոնի մէջ, 9 Հոկտեմբեր 1960, բոլոր դպրոցներու մասնակցութեամբ:

×

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Տօնածառի հանդէսը, կիրակի՝ Դեկտեմբեր 18, կէսօրէ ետք:



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Տէօրնի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները այս Ուրբաթ կէսօրէ ետք ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան ներքնայարկը:

Ներկայ պիտի ըլլան Կեդր. վարչութեան ներկայացուցիչները: Կարեւոր օրակարգ: Նոր վարչութեան ընտրութիւն: Կը խնդրուի չբացակայիլ:

Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի նկատուի:

## 30-ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹԸ

### ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ

Կիրակի, Մարտ 12, կէսօրէ վերջ ժամը 2·30ին, Սալ տը լա Շիմի, 28պիս, Րիւ Սէն Տօմինիք:

Կը խնդրուի նկատի առնել այս թուականը:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Նազելի Մատոյեան, զաւակները եւ թոռները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն, հօր եւ մեծ հօր՝

ՀԱՅԿ ՄԱՏՈՅԵԱՆի

մահուան քառասունքին առթիւ, այս կիրակի առտու Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

## ՆՈՒԷՐՆԵՐ

Տէր եւ Տիկին Գրիգոր եւ Քրիստինէ Ազոյեանեան իրենց անդրանիկ զաւակի՝ Գաբրիէլի ծնունդի առթիւ կը նուիրեն 10ական Ն. Ֆ.; Հ. Յ. Դ. Աղբիւր Սերոբ Եօթնեղբայրեան խումբին, Փորթ տ'Իթալիի Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղին, Մշակոյթի Տան, «Յառաջ»ի բարգաւաճման համար եւ Սրբազան Գալաքեանի շիրիմի համար: (Մշակոյթի Տան եւ Գալաքեան Եպիսկ. ի շիրիմին գումարները ստանալ «Յառաջ»էն):

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— «Դաշնակցութեան Օր»ը տեղի պիտի ունենայ Նոյեմբեր 5ի Շաբաթ իրիկունը Րիւ Տիւնուատի սրահին մէջ:

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Արհեստաւորներ (արթիզան), որոնք հաշուեցոյցով ծախելու իրաւունք ունենան, անոնցմէ ապրանք գնելու համար: Կանանց շատ լաւ քոնֆէքսիոն, որակը ըստ է համապատասխանէ «3 իրոնտելի»: Անմիջապէս ներկայանալ քոլեքսիոնով:

MAISON MARIE-CLAUDE
18, RUE SAULNIER, PARIS

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70-ԱՄԵԱԿԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ՀՈԿՏ. 8-ԻՆ

### ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

5ՐԴ ԹԱՂԱՄԱՍԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆԻ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

**Place du Panthéon, Métros : St.-Michel et Gare du Luxembourg**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ԱՇՈՏ ԽՍԱՀԱԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻՆ ԸՆԿԵՐՆԵՐ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ ԵՒ Հ.Յ.Դ. ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ

Երգ՝ Օր. ՍՄՍԱՐԵԱՆ: դաշնակ՝ Օր. ՖԱՐՇԵԱՆ, արտասանութիւն՝ Օր. ԳԱԲՈՅԵԱՆ եւ Ընկ. ՀԱԳԷՇԵԱՆ, պար՝ Օր. ԹԱՐՕՆ, աքորտէօն՝ ԹՈՐՈՍ ՕՍՄԱՆՃԵԱՆ և պար՝ ՍԹԷՖԱՆ ՎԱՍԷՕՐ, Թառի վրայ կը նուագէ ԳԱՐԵԳԻՆ Խօսնակ՝ Ընկ. Ե. ԳՐԻԳՈՐԵԱՆ

Կէս գիշերէն կը սկսին եւրոպական պարերը:

ORCHESTRE ROBERTO SETO ET SES RUMBEROS

Ճոխ եւ առատ պիւֆէ գիւրամատչելի գիներով

ՄՈՒՏՔ՝ 4 Ն. Ֆ.

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Ցակոբ Տէր-Ցակոբեան, Գ. Տոքթ Տէր-Ցակոբեան, Տէր եւ Տիկին Մեսրոպ Տէր-Ցակոբեան եւ զաւակները, Տէր Մեսրոպ քհնյ. Տէր-Ցակոբեան եւ երէցկինը, Այրի Տիկին Զարուհի Արզուեան եւ ընտանեկան բոլոր պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք ծաղկեպսակով, անձամբ, հեռագրով, նամակով կամ փոխան ծաղկեպսակի նուէրներով մասնակցեցան իրենց սուգին, իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր եւ եղբօր՝

ՅԱԿՈԲ ՏԷՐ-ՅԱԿՈԲԵԱՆԻ

գաղն կորուստին առթիւ:

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

Ընդհանուր ժողովը՝ Ուրբաթ, Սեպտեմբեր 30ին, ժամը 20.30ին, Մշակոյթի Տան մէջ (17 Րիւ Պլէօ):

Կարեւոր օրակարգ:

Բոլոր ընկեր-ընկերուհիներուն ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ Որբախնամ Մարմնի վարչութեան ընտրութիւնը այս Երկուշաբթի, իր կեդրոնատեղին, եկեղեցւոյ սրահը:

Կը խնդրուի բոլոր անդամակցողներէն ներկայ գտնուիլ:

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Աղբիւր-Սերոբ Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20.30ին, սովորական հաւաքատեղին: Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Տչսինի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները այս Ուրբաթ կէսօրէ ետք ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան ներքնայարկը:

Ներկայ պիտի ըլլան Կեդր. վարչութեան ներկայացուցիչները: Կարեւոր օրակարգ: Նոր վարչութեան ընտրութիւն: Կը խնդրուի չբացակայիլ:

Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի նկատուի:

ՖՐ. ԿԱԳ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 4ին, Մշակոյթի Տան մէջ (17 Րիւ Պլէօ): Օրակարգ՝ Ա) Դպրոցական հարց: Բ) Տիկին Էլլէն Բիւզանդի ի պատիւ ցերեկոյթ մը: Գ) Վարչութեան հրաժարական եւ նոր ընտրութիւն: Դ) Ընթացիկ հարցեր: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Սերաստիոյ Մուրատ Ուսումնասիրաց Միութիւնը Հայաստանէն նոր բերուած հայախօս ժապաւէն մը կը ներկայացնէ Հոկտեմբեր 18ին: Մանրամասնութիւնները յաջորդով:

×

Հանդիսաւոր տօնակատարութիւն Սարպոնի մէջ, 9 Հոկտեմբեր 1960, բոլոր գաղութներու մասնակցութեամբ:

×

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆի Տօնածառի հանդէսը, կիրակի՝ Դեկտեմբեր 18, կէսօրէ ետք:

## ՎԵՐԱՄՈՒՏ

Ֆ. Կ. Խաչի Գոմոնի մասնաճիւղի վարչութիւնս կը փութայ յայտնել թէ իր շրջանի հայ հասարակութեան պիտի կավարժարանին վերաբացումը պիտի կատարուի Հոկտեմբեր վեցին, հինգշաբթի դասարանական օրը: Արձանագրութիւն, դասարանական բաժանում եւ պատուանդութիւն տեղի պիտի ունենան նոյն օրը՝ առաւօտեան ժամը 9էն մինչեւ 12:

Վարժարանին ուսուցիչն է Գ. Վարժապետ Մխիթեան: Կը խնդրուի յարգելի ծնողներէն նկատի ունենալ վերոյիշեալ թուականը:

# Établissements G. HAGOPIAN

Կ. ՅԱԿՈԲԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ

10, Rue du Caire, PARIS-2e Tél.: CEN. 78-44 et CEN. 66-96

ՇԱՏ ՅԱՐՄԱՐ ԳԻՆԵՐՈՎ — ՄԱՆՐԱՔԱՆԱԿ ԵՒ ՓՈՔՐԱՔԱՆԱԿ

ԿԸ ԾԱԽԷ ՀԵՏԵՒԵԱԼ ԿԵՐՊԱՍՆԵՐԸ

ԷՆԹԵՐԼՈՔ INTERLOCK — ԺԱՔԱՐ JACQUARD

ՄԱՅ ԱՆԿԼԷԶ MAILLE ANGLAISE — ՄԱՅ ՍՈՒԻՍ MAILLE SUISSE

ՖԻԼ Տ'ԷՔՈՍ FIL D'ÉCOSSE

ԲԱՄՊԱԿԷ ԺԻՍՈՒԱՄՔՆԵՐ

ՊՈՒՔԼԷԹ BOUCLETTE — ՊԱՆԼՈՆ BANLON

ԶԱՆԱԶԱՆ ՏԵՍԱԿՈՎ ԵՒ ԳՈՅՆՈՎ ԹՐԻԿՕՅԻ ՊԱՏՐԱՍՏ ԱՊՐԱՆՔՆԵՐ

ՎԵՐՋԻՆ ՆՈՐԱՁԵՒՈՒԹԻՒՆՆԵՐՈՎ

ԿԸ ԾԱԽԷ ՋՈՒՏ ԲՈՒՐԴԷ ԴԵՐՁԱՆ 2-28, 2-40, ԵՒ ԽԱՌՆ ԲՈՒՐԴՈՎ 1-26, 1-40

ՅԱՐՄԱՐ ԳԻՆԵՐ

ԵՒ

ՎՃԱՐՈՒՄԻ ԼԱՒ ԴԻՒՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Նազելի Մատոյեան, զաւակները եւ թոռները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն, հօր եւ մեծ հօր՝

ՀԱՅԿ ՄԱՏՈՅԵԱՆի

մահուան քառասունքին առթիւ, այս կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները։

×

Տէր եւ Տիկին Զ. Եղբայրեան եւ Տէր եւ Տիկին Զ. Լօքմակէօզեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, այս Կիրակի առաւօտ, յետ պատարագի, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, իրենց մօր՝

ՎԵՐԳԻՆ ՋԻԼԻՆԿԻՐԵԱՆի

մահուան երկրորդ տարեդարձին եւ իրենց քրոջ՝

ԳԼԱԹՐԻՍ ՋԻԼԻՆԿԻՐԵԱՆի

մահուան քառասունքին առթիւ։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Գոմոնի Կապ. Խաչի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Այրի Տիկ. Մ. Չոլաքեանէ քսան Ն. Ֆ., իր ամուսնոյն մահուան տարելիցին առթիւ։ Նոյնպէս շնորհակալութեամբ ստացած է Պ. Հայկ Մարգարեանէ հինգ Ն. Ֆ., իր մօր հոգեհանգստեան առթիւ եւ Պ. Յակոբ Շահինեանէ տասը Ն. Ֆ., նոյն նպատակաւ։

×

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուէրները, ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան —

Պ. Վ. Խրիմեանէ տասը Ն. Ֆ., Սէն Սաթիւրնէն (Վօքլիւզ), Տէր եւ Տիկին Վարդերես Մինասեանէ իրենց զաւկին ղինուորութենէ վերադարձին առթիւ քսան Ն. Ֆ., Թարարէն հանգ. Յակոբ Գոչումեանի մահուան առթիւ Թարարի հայրենակիցներէ, փոխան ծաղկեպսակի 115 Ն. Ֆ., Թարարէն Տէր եւ Տիկին Յակոբ Փալանճեանէ յիսուն Ն. Ֆ., Հանգուցեալ Գ. Տապաղեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի Փարիզէն Տէր եւ Տիկին Պետրոսեան Լիոնի եկեղեցւոյ շինութեան կը նուիրեն յիսուն Ն. Ֆ.։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Սերաստիոյ Մուրատ Ուսումնասիրաց Միութիւնը Հայաստանէն նոր բերուած հայախօս ժապաւէն մը կը ներկայացնէ Հոկտեմբեր 18ին։ Մանրամասնութիւնները յաջորդով։

### ՎԵՐԱՄՈՒՏ

Ֆ. Կ. Խաչի Գոմոնի մասնաճիւղի վարչութիւնս կը փութայ յայտնել Գոմոնի շրջանի հայ հասարակութեան թէ՝ իր վարժարանին վերաբացումը պիտի կատարուի Հոկտեմբեր վեցին, հինգշաբթի օրը։ Արձանագրութիւն, դասարանական բաժանում եւ դասաւանդութիւն տեղի պիտի ունենան նոյն օրը՝ առաւօտեան ժամը 9էն մինչեւ 12։

Վարժարանին ուսուցիչն է Պ. Վահրամ Մխաթեք։ Կը խնդրուի յարգելի ծնողքներէն նկատի ունենալ վերոյիշեալ թուականը։

### ՀԱՅԱՍՏԱՆԷՆ ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Կը փնտռուի Սուրէն Շամիրի Պօղոսեան, ծնած Հայաստանի Շամշադինի շրջանի Զինչին գիւղը 1909ին։ Մօրը անունը՝ Անուշ Սիմոնի Պօղոսեան, կինը՝ Սաթենիկ Յարութիւնի Պօղոսեան, մէկ աղջիկ ունի՝ Ռիմա Սուրէնի Պօղոսեան։ 1942ին պատերազմի մեկնած է եւ անկէ ի վեր ոչ մէկ լուր կայ, եթէ ողջ է թող գրէ իր հարազատներուն։ Մէկը ըսած է թէ ողջ է եւ Եւրոպա է, Ռիմային։ Կը խնդրուի իրմէ անպայման գրել իր աղջկանը, նոյնիսկ եթէ ամուսնացած է, պարզապէս իր ողջ ըլլալը յայտնելու համար։ Աղջկան հասցէն է՝ Ռիմա Սուրէնի Պօղոսեան, 32, Լենինի Պողոտա բ. 78, Երեւան, Հայաստան։

Imprimerie Spéciale du journal « Haratch »

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70-ԱՄԵԱԿԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ՀՈԿՏ. 3-ԻՆ

ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

5ՐԴ ԹԱՂԱՄԱՍԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆԻ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

**Place du Panthéon, Métros : St.-Michel et Gare du Luxembourg**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻՆ ԸՆԿԵՐՆԵՐ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ ԵՒ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԿԵԴՐ. ՎԱՐՉ. ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ

Երգ՝ Օր. ՍՄՍԱՐԵԱՆ։ ջութակ՝ Օր. ՖԱՐՇԵԱՆ, արտասանութիւն՝ Օր. ԳԱԲՈՅԵԱՆ եւ Ընկ. ՀԱԳԼՇԵԱՆ, պար՝ Օր. ԹԱՐՕՆ, ակորտէօն՝ ԹՈՐՈՍ ՕՍՄԱՆՃԵԱՆ և պար՝ ՍԹԷՖԱՆ ՎԱՍԷՕՐ, Թատրի վրայ կը նուագէ ԳԱՐԵԳԻՆ Խօսնակ՝ Ընկ. Ե. ԳՐԻԳՈՐԵԱՆ

Կէս գիշերին կը սկսին եւրոպական պարերը։

ORCHESTRE ROBERTO SETO ET SES RUMBEROS

ճոխ եւ առատ պիւֆէ՝ դիւրամատչելի գիներով

ՄՈՒՏՔ՝ 4 Ն. Ֆ.

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Աղբիւր - Սերոբ Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20.30-ին, սովորական հաւաքատեղին։ Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին։

Ներկայ կ'ըլլայ Փարիզի Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Տէսինի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները այս Ուրբաթ կէսօրէ ետք ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան ներքնայարկը։

Ներկայ պիտի ըլլան Կեդր. վարչութեան ներկայացուցիչները։ Կարեւոր օրակարգ։ Նոր վարչութեան ընտրութիւն։ Կը խնդրուի չբացակայիլ։

Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի նկատուի։

ՖՐ. ԿԱԳ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 4ին, Միշոտիյթի Տան մէջ (17 Րիւ Պլէօ)։ Օրակարգ՝ Ա) Դպրոցական հարց։ Բ) Տիկին Էլլէն Բիւզանդի ի պատիւ ցերեկոյթ մը։ Գ) Վարչութեան հրաժարական եւ Նոր ընտրութիւն։ Դ) Ընթացիկ հարցեր։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։

ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ Որբախնամ Մարմնի վարչութեան ընտրութիւնը այս Երկուշաբթի, իր կեդրոնատեղին, եկեղեցւոյ սրահը։

Կը խնդրուի բոլոր անդամակցողներէն ներկայ գտնուիլ։

### Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

Ընդհանուր ժողովը՝ Ուրբաթ, Սեպտեմբեր 30ին, ժամը 20.30ին, Միշոկոյթի Տան մէջ (17 Րիւ Պլէօ)։

Կարեւոր օրակարգ։

Բոլոր ընկեր - ընկերուհիներուն ներկայութիւնը պարտաւորիչ է։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— «Դաշնակցութեան Օր»ը տեղի պիտի ունենայ Նոյեմբեր 5ի Շաբաթ երեկոյեան Րիւ Տիւնուայի սրահին մէջ։

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Օշին Փէշտըմալճեան կը փնտռէ իր զարմիկը՝ Էմմանուէլ Մալի, Սոֆիայի (Պուլկարիա) որ 1918ին Նիւ Եորք գացած է։ Լուր ունեցողներէն գրել «Յառաջ»ին։ Կը խնդրուի Հայրենիքէն արտատպել։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Տօնածառի հանդէսը, կիրակի՝ Դեկտեմբեր 18, կէսօրէ ետք։